# ՅՈՎՆԱՆ Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ

Պատրաստած է հետեւեալ Նոր Դասագրքերն, մանկավարժական նորագոյն մեթոտներու համաձայն, դիւրացնելու համար Ուսումն. Խորհրդոյ Կրթական Ծրագրին գործադրութիւնը.

1. *ԳՈՐԾՆԱԿԱՆ ԸՆԹԱՑՔ ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒԻ. ԱՅԲԲԵՆԱՐԱՆ-ԸՆԹԵՐՑԱՐԱՆ: Բնական եւ դիւրագոյն մեթոտ կարդալ գրելու: Գիր եւ ընթերցում համընթաց: Խոշորագիր* . . . . . . . . . . . . . . . . 1 1/2 Ղրշ.

2. *ԻՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ. Դասագիրք Ընթերցանութեան եւ բնական ու բնապատմական նախնական ծանօթութեանց* . . . . . . . . . . . . . . . . 3 Ղրշ.

3. *ԱՅԲԲԵՆԱՐԱՆ-ԸՆԹԵՐՑԱՐԱՆ ՖՐԱՆՍԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ, Դիւրուսոյց մեթոտով: Տղայոց եւ չափահասներու համար* . . . . . . . . . . . . . . . 1 1/2 Ղրշ.

4. *ՊԶՏԻԿՆԵՐՈՒՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆԸ. Պատկերներով, Յատակագծերով եւ Աշխարհացոյցերով: Մանկապարտէզ-Մանկոցներու, Նախապատ. կարգերու եւ Տարր. Դասընթացքի Ա. տարւոյ համար: Դ. տիպ՝ հիմնովին բարեփոխուած* . . . . . . . . . . . . . . . . . 2 1/2 Ղրշ.

5. *ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ Տարրական Դասընթացք (Ա. եւ Բ. տարի). Պատկերներով եւ Աշխարհացոյցերով. Բ. Տպագրութիւն բարեփոխուած* . . . . . . 2 1/2 Ղրշ.

6. *ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ Միջին Դասընթացք (Հրատարակելի):*

7. *ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ Բարձ. Դասընթացք. Պատկերազարդ. Բնական եւ Քաղաքական. Ճոխ ծանօթութիւնք աշխարհի հինգ մասանց Բնական եւ Ճարտարագործական արտադրութեանց եւ Վաճառականութեան վրայ. Մեծադիր: Երես 200* . . . . . . . . . . . . . 6 Ղրշ.

Palagashean, Hovhan G.

Յ. Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ

Pztiknerun tuagitutiwne mankaparteznen

# ՊԶՏԻԿՆԵՐՈՒՆ

# ԹՈՒԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ

## ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶՆԵՐՈՒ, ԾԱՂԿՈՑՆԵՐՈՒ

ԵՒ

ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ

ԿԱՐԳԵՐՈՒ ՀԱՄԱՐ

Զ. Տպագրութիւն

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Վ. ՄԻՆԱՍԵԱՆ
ԳՐԱՏՈՒՆ Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ
Սուլթան Համամ փողոց, թիւ 14

1903

# ՅԱՌԱՋԱԲԱՆ Ե. ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

1880ին էր, Թրքահայոց մէջ նախաձեռնարկ եղանք հրատարակելու՝ Եւրոպական նոր մանկավարժութեան սկզբանց համաձայն պատրաստուած Թուագիտութեան դասագրքեր, տարիներու բաժնուած։ Մինչեւ այն ատեն, հնադարեան հակամանկավարժական ուղղութեամբ պատրաստուած դասագրքեր էին որ կը գործածուէին մեր բոլոր վարժարանաց մէջ։ Մեր ձեռնարկ, թէեւ ուսուցանելու հնաւանդ եւ հաստատարմատ դրութեան հակառակ եւ բոլորովին նորերեւոյթ, մեր յուսացածէն աւելի ընդունելութիւն գտաւ, եւ մենք քաջալերուեցանք հետզհետէ այդ գործին յաջորդ մասերն ալ հրատարակելու, եւ մէկ կողմանէ սպառած հատորներու կրկին տպագրութեան առթիւ ամէն անգամ վերստին քննելու գալու եւ հարկ տեսնուած բարեփոխութիւններն ընելու։

Այս անգամ եւս, ուսումնասիրելով Եւրոպական այս կարգի շատ մը դասագրքեր եւ մեր անձնական փորձառութենէն ալ օգտուելով, վերստին քննութեան ենթարկեցինք մեր Թուագիտութեան դասագրքերու բոլոր հատորները, կարեւոր բարեփոխութիւններ ներմուծելով անոնց մէջ, առաւել եւս ճոխացնելով զայն, առաւել եւս պատշաճեցնելով Եւրոպական նոր մանկավարժութեան, մեր ցեղական առանձնայատկութեանց եւ տեղական պահանջմանց ու հանգամանաց, եւ անուանելով այս դասագրքերու շարքը՝ Նոր Դասընթաց Թուագիտութեան, Բանաւոր եւ Գրաւոր, բաժնուած՝ Տարրական, Միջին եւ Բարձրագոյն ընթացքներու, ընդամէնը վեց տարուան ընթացքով։ Ա. եւ Բ. տարիները կը կազմեն Տարրական դասընթացքը, Գ. եւ Դ. տարիները՝ Միջին դասընթացքը, Ե. եւ Զ. տարիները՝ Բարձրագոյն դասընթացքը։

Ներկայ Ա. տարին՝ որ կրնայ կոչուիլ նաեւ Նախապատրաստական տարի, 6—8 տարեկան տղոց համար, ամենապարզ կերպով կ՚ուսուցանէ գրել եւ կարդալ 1—100 թիւերն, մասնաւորապէս ընտելացնելով մանկտին 1—10 ամբողջ թուոց չորս գործողութեանց, ինչպէս եւ բերանացի հաշիւներու։

Տղան՝ այս տարիքին մէջ՝ տակաւին չի կրնար գործ ունենալ վերացեալ եւ կնճռոտ գործողութեանց հետ. ամէնէն առաջ նա պէտք ունի ըմբռնելու թէ ինչ է միութիւնը, ինչ է թիւը. պէտք ունի խելամուտ ըլլալու թուոց կազմական դրութեան, եւ հասկնալու հիմնական չորս գործողութեանց տեսակը եւ նպատակը։ Այս արդիւնքը կրնանք ձեռք բերել՝ մի միայն թանձրացեալ միջոցներ, ամենապարզ թիւեր եւ ըմբռնելի ձեւեր

գործածելով։ Պէտք է որ հիմնական ծանօթութիւնք անդադար կրկնուին․ պէտք է որ բազմազան հարցմունք եւ հրահանգք, ընտանի ձեւով մը, տղոց ըմբռնել տան Թուագիտութեան եւ ընթացիկ խօսակցութեան մէջ գործածուած ասութեանց արժէքն։ Անհրաժեշտ է մանաւանդ որ տղան միշտ խորհրդածելու վարժուի Թուոց կիրարկութեան, ինչպէս եւ ամէն բանի մէջ։ Այս նպատակին պէտք է որ ծառայեն իւրաքանչիւր դաս եւ իւրաքանչիւր խնդիր։ Ուսուցչին կէտ նպատակին պիտի ըլլայ, այս նախակրթական դասերուն մէջ, խորհրդածութիւնն աւելի քան թէ հաշիւը։ Ուսուցիչք եւ վարժուհիք պիտի աշխատին այս ուղղութեամբ հրահանգել մանկտին, եւ առ այս իրենց գործը մեծապէս պիտի դիւրացնէ գործոյս մէջ ամփոփուած պարզ եւ ընտանի խնդիրներու եւ նպատակայարմար վարժութիւններու առատ պաշարը։ Այս հանգամանքով, ներկայ հատորը կրնայ ծառայել աշակերտաց ձեռքն իբրեւ Թուաբանական պարզ խնդիրներու եւ հրահանգներու նոր Հաւաքածոյ մը, իսկ ուսուցչաց ձեռք իբրեւ Առաջնորդ մը աւանդելի դասուց համար, թէ նիւթերու, թէ դասակարգութեան եւ թէ մեթոտի մասին։

---

## ՆԵՐԿԱՅ Զ.րդ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ

Մեր պատրաստած Թուագիտութեան Նոր Դասընթացքին զանազան հատորներուն սպառելովը, անոնց ի նորոյ տպագրութեան ձեռնարկելու առթիւ, նոր քննութեան մը բովէն անցուցինք զանոնք, նորանոր բարեփոխութիւններ ներմուծեցինք անոնց մէջ, եւ նոյն Դասընթացքը վերակազմեցինք հետեւեալ կերպով․

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1․ | Պզտիկներուն թուագիտութիւնը | | | 3 | Ղրշ․ |
| 2․ | Տարրական Դասընթացք, | Ա․ | տարի | 3 | » |
| 3․ | » » | Բ․ | » | 3 | » |
| 4․ | Միջին Դասընթացք | Գ․ | » | 4 | » |
| 5․ | » » | Դ․ | » | 4 | » |
| 6․ | Բարձրագոյն Դասընթացք, | Ե․ եւ Զ․ | տարի | 10 | » |

# ՊԶՏԻԿՆԵՐՈՒՆ ԹՈՒԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ

## ԻՆՆ ԱՌԱՋԻՆ ԹԻՒԵՐԸ

## ՄԷԿ. I

*Ցուցուցէք ինծ* մէկ *գիրք*, մէկ *մատ*, մէկ *գրաքար*, մէկ *տղայ*, մէկ *ձի*, մէկ *սեղան*։



Ձի մը. 1



Տղայ մը. 1



Սեղան մը. 1

*Կարդացէք եւ գրեցէք*. 1 *գիրք*, 1 *մատ*, 1 *գրաքար*, 1 *տղայ*, 1 *ձի*, 1 *սեղան*, 1 *գրիչ*, 1 *մատիտ*, 1 *հաց*, 1 *տանձ*, 1 *խնձոր*, 1 *քարէ գրիչ*, 1 *տետրակ*։

# ԵՐԿՈՒ. 2

*Հայրս մէկ տանձ տուաւ ինձ, մէկ տանձ ալ մայրս տուաւ. քանի՞ տանձ եղաւ.* Երկու *տանձ։*



*Մէկ, մէկ ալ, կ՚ընէ* երկու. ❁ ❁

*Կարդացէք եւ գրեցէք.* 2 *տանձ,* 2 *մատ,* 2 *աչք,* 2 *ականջ,* 2 *ձեռք,* 2 *ոտք,* 2 *տղայ։*






1 *տանձին քով քանի՞ տանձ դնելու եմ որ* 2 *տանձ ըլլայ։*

2 *տանձ ունէի,* 1 *հատը կերայ. քանի՞ տանձ մնաց։ — Եթէ* 1 *հատն ալ ուտեմ, քանի՞ տանձ պիտի մնայ։*

2*էն* 1 *հանենք նէ, քանի՞ կը մնայ։*

1*ին վրայ ի՞նչ աւելցնենք նէ՝* 2 *կ՚ունենանք։*

2*էն* 2 *հանենք նէ, քանի՞ կը մնայ։*

---

# ԵՐԵՔ. 3

2 տանձ ունէի, 1 տանձ ալ եղբայրս տուաւ; քանի՞ տանձ եղաւ. — եղաւ Երեք տանձ։



Երկու, մէկ ալ, կ'ընէ Երեք[1]. 

Ցուցուցէք ինձ Երեք մատ, Երեք գիրք, Երեք գրիչ։



Մէկ տղայ



Երկու տղայ



Երեք տղայ

Ի՞նչ է Երեքը.

Երեքն է 1, աւելի 1, աւելի դարձեալ 1.



---

[1] Ուսուցիչը գրատախտակին վրայ շինելու է այսպիսի մեծ կէտեր եւ զանոնք ցոյց տալով աշակերտաց, անուանելու է մէկ, երկու, երեք, եւայլն։ Կրնայ փոքրիկ գնտակներէ կամ ուրիշ առարկայներէ եւս օգտուիլ՝ աշակերտաց մէջ զարթուցանելու եւ լաւ տպաւորելու համար թուոց գաղափարը։

Երեքն է 2, աւելի 1. 

Երեքն է 1, աւելի 2. 

Երեք շաքար ունէի, մէկ հատը կերայ. քանի՞ շաքար մնաց։

Զապէլ երեք խնձոր առաւ հօրմէն. եղբայրը 1



խնձոր պակաս առաւ. եղբայրը քանի՞ խնձոր ունի։

Երեքէն 1 հանեցէք. ի՞նչ կը մնայ։

Երեքէն 2 հանեցէք. ի՞նչ կը մնայ։

Երեքէն 2, յետոյ 1 հանեցէք. ի՞նչ կը մնայ[1]։

Երեքէն երեք հանեցէք. ի՞նչ կը մնայ։

Կարդացէք եւ գրեցէք. 3 տանձ, 3 շաքար, 3



խնձոր, 3 մարդ, 3 կատու, 3 մուկ, 3 գիրք, 3 տղայ, 3 շուն, 3 աթոռակ։



[1] Որպէս զի բոլոր աշակերտք կարենան նկատել թէ արդեօք տրուած պատասխանը ճի՞շդ է թէ՝ սխալ, ուսուցիչն իր ձեռօք պէտք է ծածկէ հանելիք կէտերը, կամ զատէ հանելիք գնտակները։ Ուսուցիչը, կէտերու կամ գնտակներու տեղ, կրնայ իր մատներն ալ ցոյց տալ։

# ՉՈՐՍ. 4

Երեք տանձ ունէի, մէկ տանձ ալ քոյրս տուաւ, եղաւ չորս տանձ։



Ցուցուցէք ինձ չորս մատ, չորս տղայ, չորս գիրք։

Ահա երկու կէտ

Երկու կէտ ալ աւելցնենք.

Երկու եւ երկու, կ՚ընէ չորս.



Կարդացէք եւ գրեցէք. 4 կաղամար, 4 գիրք, 4 գլխարկ, 4 քանակ, 4 գրչածայր, 4 շապիկ, 4 կօճակ, 4 գրասեղան, եւայլն։

Երկու տանձ, երկու տանձ ալ, քանի՞ տանձ կ՚ընէ։

Ամէն մէկ ձեռքիս մէջ 2 ընկոյզ ունիմ. ամէնը քանի՞ ընկոյզ ունիմ։

Գոհարիկ չորս ընկոյզ ունէր. 3 հատը կերաւ. քանի՞ հատ մնաց։

Իսկուհի չորս խնձոր ունի. Վերգինէ անոր կէսին [1] չափ ունի. քանի՞ խնձոր ունի Վերգինէ։

---

[1] Բացատրել թէ ի՞նչ է կէսը, թերթ մը թուղթը՝

*Յակոբ չորս տանձ ունէր․ կէսը իր հօրեղբօրը տուաւ․ Հիմա Յակոբ քանի՞ տանձ ունի, եւ հօրեղբայրը քանի՞ տանձ ունի։*

---

Ի՞նչ է չորսը․

*Չորսն է 2, աւելի 2․* 

*Չորսն է 3, աւելի 1․* 

*Չորսն է 1, աւելի 3․* 

*Չորսէն 2 հանեցէք․ ի՞նչ կը մնայ։*

*Չորսէն 3 հանեցէք․ ի՞նչ կը մնայ։*

*Չորսէն չորս հանեցէք․ ի՞նչ կը մնայ։*

*Չորսէն հանեցէք 1, յետոյ 2․ ի՞նչ կը մնայ։*

*Ի՞նչ է չորսին կէսը։*

*1ին վրայ քանի՞ աւելցնելով՝ 4 կ'ունենանք։*

*Քանի՞ կ'ունենանք, երբ 1ին վրայ 3 աւելցնենք, 2ին վրայ 2 աւելցնենք, 3ին վրայ 1 աւելցնենք։*

*4 ունենալու համար 2ին վրայ քանի՞ աւելցնելու է, 1ին վրայ քանի՞ աւելցնելու է։*

*Ի՞նչ է 4ին* քառորդը, *4ին կէսը։*

---

*օրինակի համար՝ երկու հաւասար մասերու բաժնելով տղոց աչքին առջեւ։ Միեւնոյն կերպով՝ իր կարգին բացատրելու է նաեւ* քառորդը*։*

# ՀԻՆԳ. 5

Չորսին վրայ ✿ ✿ ✿ ✿ աւելցնենք մէկ ✿.
կ'ունենանք հինգ ✿ ✿ ✿ ✿ ✿



Չորս տղայ. 4



Հինգ տղայ. 5

Կարդացէք եւ գրեցէք. 5 տանձ, 5 խնձոր, 5 կեռաս, 5 շաքար, 5 ընկոյզ, 5 սերկեւիլ, 5 ձմերուկ, 5 սեխ, եւայլն։

Չորս տանձին վրայ եթէ մէկ տանձ ալ աւելցընենք, քանի՞ տանձ կ'ըլլայ։



Մէկ ձեռքիս մէջ երեք ընկոյզ ունիմ եւ միւսին մէջ 2 ընկոյզ. ամէնը քանի՞ ընկոյզ ունիմ։

Սաթենիկ 2 գրիչ ունի. քոյրը 1 գրիչ աւելի

ունի․ քոյրը քանի՞ գրիչ ունի․ երկուքը մէկտեղ քանի՞ գրիչ ունին։

Մաքրուհի 3 մատիտ ունի․ եղբայրը 1 հատ պակաս ունի․ եղբայրը քանի՞ մատիտ ունի․ երկուքը մէկտեղ քանի՞ մատիտ ունին։

Վերժինէ հինգ ընկոյզ ունէր․ 1 հատը կորսնցուց եւ 2 հատը կերաւ․ քանի՞ ընկոյզ պակսեցաւ․ հիմա քանի՞ ընկոյզ ունի։

---

Ի՞նչ է հինգը․

Հինգն է 4 աւելի 1․ ● ● ● ●   ●

Հինգն է 2, աւելի 2, աւելի 1․ ● ●   ● ●   ●

Հինգն է 3, աւելի 2․ ● ● ●   ● ●

Հինգէն հանեցէք 1․ ի՞նչ կը մնայ։

„ „ 2․ „ „

„ „ 3․ „ „

„ „ 4․ „ „

5էն հանեցէք 2, յետոյ դարձեալ 2․ ի՞նչ կը մնայ։ — 5ին մէջ քանի՞ հատ 1 կայ։

---

# ՎԵՑ. 6

Երեքին վրայ
Երեք ալ աւելցնենք .
Երեք, երեք ալ, կ՚ընէ վեց ։



Ցուցուցէք ինձ վեց մատ, վեց տղայ, եւայլն ։

Կարդացէք եւ գրեցէք . 6 ձի, 6 էշ, 6 ոչխար, 6 այծ, 6 կով, 6 շուն, 6 կատու, 6 մուկ, 6 ճանճ, 6 տղայ, եւայլն ։



Վեց տղայ . 6

5 տանձին վրայ եթէ տանձ մըն ալ աւելցնեմ, քանի՞ տանձ կ՚ըլլայ ։



Քանի՞ կ՚ընէ 5 եւ 1 ։ — 5 եւ 1 կ՚ընէ վեց ։

Նշան 6 խնձոր ունէր . 2 հատը կերաւ . քանի՞ խնձոր ունի հիմա ։

ունի․ քոյրը քանի՞ գրիչ ունի․ երկուքը մէկտեղ քանի՞ գրիչ ունին։

Մաքրուհի 3 մատիտ ունի․ եղբայրը 1 հատ պակաս ունի․ եղբայրը քանի՞ մատիտ ունի․ երկուքը մէկտեղ քանի՞ մատիտ ունին։

Վերժինէ հինգ ընկոյզ ունէր․ 1 հատը կորսնցուց եւ 2 հատը կերաւ․ քանի՞ ընկոյզ պակսեցաւ․ հիմա քանի՞ ընկոյզ ունի։

---

Ի՞նչ է հինգը․

Հինգն է 4 աւելի 1․

Հինգն է 2, աւելի 2, աւելի 1․

Հինգն է 3, աւելի 2․

Հինգէն հանեցէք 1․ ի՞նչ կը մնայ։

„ „ 2․ „ „

„ „ 3․ „ „

„ „ 4․ „ „

5էն հանեցէք 2, յետոյ դարձեալ 2․ ի՞նչ կը մնայ։ — 5ին մէջ քանի՞ հատ 1 կայ։

---

# ՎԵՑ. 6

*Երեքին վրայ*
*Երեք ալ աւելցնենք.*
*Երեք, երեք ալ, կ՚ընէ* վեց։



*Ցուցուցէք ինձ վեց մատ, վեց տղայ, եւայլն։*

*Կարդացէք եւ գրեցէք.* 6 *ձի*, 6 *էշ*, 6 *ոչխար*, 6 *այծ*, 6 *կով*, 6 *շուն*, 6 *կատու*, 6 *մուկ*, 6 *ճանճ*, 6 *տղայ*, *եւայլն։*



Վեց տղայ. 6

5 *տանձին վրայ եթէ տանձ մըն ալ աւելցնեմ, քանի՞ տանձ կ՚ըլլայ։*



*Քանի՞ կ՚ընէ* 5 *եւ* 1։ — 5 *եւ* 1 *կ՚ընէ* վեց։

*Նշան* 6 *խնձոր ունէր.* 2 *հատը կերաւ. քանի՞ խնձոր ունի հիմա։*

Ամէն մէկ ձեռքիս մէջ 3 ընկոյզ ունիմ. բոլորը քանի՞ ընկոյզ ունիմ։

Հայր մը իր 6 տղոց 6 տանձ բաժնել կ՚ուզէ. ամէն մէկուն քանի՞ տանձ պիտի տայ։

Մայր մը կ՚ուզէ իր երեք աղջիկներուն 6 կծիկ դերձան բաժնել. ամէն մէկը քանի՞ կծիկ պիտի առնէ։

---

Ի՞նչ է վեցը։



Վեցն է 2, աւելի 2, աւելի 2,
Վեցն է 3, աւելի քանի՞.
Վեցն է 4, աւելի՞ „
Վեցն է 5, աւելի՞ „

Զարուհի իր 6 ընկոյզները 3 հաւասար մասերու կը բաժնէ. ամէն մէկ մասին մէջ քանի՞ ընկոյզ կը դնէ։

Մարտիկ 6 ընկոյզ ունէր. 2 հատը եղբօրը տուաւ. քանի՞ ընկոյզ մնաց իրեն։

Վեց ընկոյզ ունէի, կէսը կերայ. քանի՞ հատ կերայ եւ քանի՞ հատ մնաց։

Մայրս 1 օրուան մէջ մէկ շապիկ կը կարէ. 6 շապիկ կարելու համար քանի՞ օր աշխատելու է։

Մեսրոպ վեց տարու է. քոյրը անոր կէս տարիքն ունի. քոյրը քանի՞ տարու է. Մեսրոպ քրոջմէն քանի՞ տարու մեծ է։



Քանի՞ կ՚ընէ 2 անգամ 3.
Քանի՞ կ՚ընէ 3 անգամ 2.
Քանի՞ կ՚ընէ 6 անգամ 1.

Վեցէն 2 հանեցէք, — 3 հանեցէք, — 4 հանեցէք. ի՞նչ կը մնայ։

---

# ԵՕԹԸ. 7

6ին վրայ 1 աւելցնենք.
6 եւ 1 կ'ընէ եօթը.

Կարդացէք եւ գրեցէք. 7 հայելի, 7 դանակ, 7 սեղան, 7 պատառաքաղ, 7 սկաւառակ, 7 դըր-գալ, 7 սփռոց, 7 անձեռոց, եւայլն.

Եօթն է 3, աւելի 3, աւելի՞

Եօթն է 6, աւելի՞.
Եօթն է 4, աւելի՞.
Եօթն է 3, աւելի՞.

Նշան 7 հատ փայտէ մարդեր ունի. կ'ուզէ երկու կարգի վրայ շարել զանոնք. ի՞նչպէս ընելու է։



Կարապետ 7 տող դաս սորվեցաւ եւ 2 տողը մոռցաւ. հիմա քանի՞ տող գիտէ։

Ճամբորդութիւն մը ըրի որ մէկ շաբաթ տեւեց. քանի՞ օր կ'ընէ ասիկայ։

Բարսեղ 2 ընկոյզ ունի, Թորոս 3, եւ Համբարձում 2. բոլորը քանի՞ ընկոյզ կ'ընէ։

Պօղոս 7 տարու է. եղբայրը 4 տարու է. Պօղոս եղբօրմէն քանի՞ տարու մեծ է։

Յակոբ 3 տարու է. քոյրը 4 տարու աւելի մեծ է. քոյրը քանի՞ տարու է։

---

# ՈՒԹ. 8

Ահա եօթը․ Աւելցնենք մէկ․

Եօթը, մէկ ալ, կ'ընէ ութ․

Ուրիշ ի՞նչ կերպով կրնանք խումբերու բաժնել այս ութ կէտերը։

Չորս եւ չորս, կ'ընէ ութ․

Ուրեմն ութը է 4 աւելի 4․

Նոյնպէս ութն է 4 անգամ 2․

6 աւելի 2 կ'ընէ ութ։

3, աւելի 3, աւելի 2, կ'ընէ ութ։

7ը, աւելի՞։ — 3, աւելի՞։ — 5, աւելի՞։

Կարդացէք եւ գրեցէք․ 8 տանձենի, 8 խնձորենի, 8 սալորենի, 8 թթենի, 8 ընկուզի, 8 թզենի, 8 կեռասենի, եւայլն։

8էն հանեցէք 4, — հանեցէք 6, — հանեցէք 2, — հանեցէք 5, — հանեցէք 3, — հանեցէք 1․ Ի՞նչ կը մնայ։

Ահա 8 կէտ․

Ասկէ հանեցէք 2 անգամ 3․

Ի՞նչ կը մնայ։

8էն հանեցէք 4 անգամ 2. ի՞նչ կը մնայ։



8էն հանեցէք 5 անգամ 1. ●●●●●. ի՞նչ կը մնայ։

8էն հանեցէք 6 անգամ 1. ●●●●●●. ի՞նչ կը մնայ։

Քանի՞ է 8 հացին կէսը։

Մելքոն 5 խնձոր ունի. Ներսէս անկէ 2 խըն-ձոր պակաս ունի. քանի՞ խնձոր ունի Ներսէս, եր-կուքը մէկտեղ քանի՞ խնձոր ունին։

Յովսէփ 8 խնձոր ունի. 1 հատը եղբօրը կու-տայ եւ 2 հատը քրոջը. քանի՞ հատ կը պակսի. քա-նի՞ հատ կը մնայ իրեն։



Յակոբ 4 ական թերթով 2 տետրակ պիտի շի-նէ. քանի՞ թերթ թուղթ առնելու է։

Ամէն մէկ ձեռքիս մէջ 4 գրիչ ունիմ. ամէնը քանի՞ գրիչ կ՚ընէ։

# ԻՆԸ. 9

Ցին վրայ 1 աւելցնենք, պիտի ունենանք ինը։



Այս կէտերով կրնա՞նք ուրիշ կերպ խումբեր կազմել։

Ինն է 3, աւելի 3, աւելի՞։



Ինն է 6, աւելի՞. — Ինն է 4, աւելի՞։ — Ինն է 5, աւելի՞։ — Ինն է 7, աւելի՞։ — Ինն է 8, աւելի՞։

Կարդացէք եւ գրեցէք. 9 վարդ, 9 մանուշակ, 9 մեխակ, 9 շահպրակ, 9 շուշան [զամպագ], 9 արեւածաղիկ, 9 երիցուկ [փափաթիա], եւայլն։

ԻՆՆԷՆ հանեցէք 6, — հանեցէք 3, — հանեցէք 4, — հանեցէք 5, — հանեցէք 1. ի՞նչ կը մնայ։

Նշան 5 խնձոր ունի. Մկրտիչ 1 խնձոր պակաս ունի. քանի՞ խնձոր ունի Մկրտիչ. երկուքը մէկտեղ քանի՞ խնձոր ունին։

Համբարձում 9 նուշ ունէր. 3 հատը կերաւ եւ 3 հատը իր եղբօրը տուաւ. քանի՞ հատ պակսեցաւ. քանի՞ հատ մնաց։

Գալուստ օրը 3 երես գիր կրնայ գրել· քանի՞ օրէն պիտի կրնայ գրել 9 երես գիրը։

Օննիկ 9 ընկոյզ ունի. 3 մասի կը բաժնէ. առաջին մասին մէջ կը դնէ 2 ընկոյզ, երկրորդ մասին մէջ 1 ընկոյզ աւելի կը դնէ. երրորդ մասին մէջ երկրորդէն 1 ընկոյզ աւելի կը դնէ. ամէն մէկ մասին մէջ քանի՞ ընկոյզ կայ։

0 0   0 0 0   0 0 0 0

Յովսէփ 9 թերթ թուղթ ունի. կ՚ուզէ երկու տետրակ շինել. տետրակները քանի՞ կան թերթ պիտի ունենան։

Շապիկ մը շինելու համար 2 կանգուն կտաւ պէտք է. քանի՞ շապիկ կը շինուի 9 կանգուն կտաւով։

Քանի՞ կը մնայ, երբ 9էն 1 հանեմ, 2 հանեմ, 3 հանեմ, 4 հանեմ, 5 հանեմ, 6 հանեմ, 7 հանեմ, 8 հանեմ, 9 հանեմ։

Գարեգին սեղանին վրայ 9 ընկոյզ ունէր. ամէն մէկ ձեռքին մէջ 14 հատ առաւ. սեղանին վրայ քանի՞ հատ մնաց։

6ին կէսը քանի՞ է։ — 9ի՞ն կէսը։



# ՔԱՂՈՒԱԾՔ

| Թիւեր | | Թուանշաններ |
|---|---|---|
| Մէկ | 0 | 1 |
| Երկու | 0 0 | 2 |
| Երեք | 0 0 0 | 3 |
| Չորս | 0 0 0 0 | 4 |
| Հինգ | 0 0 0 0 0 | 5 |
| Վեց | 0 0 0 0 0 0 | 6 |
| Եօթը | 0 0 0 0 0 0 0 | 7 |
| Ութ | 0 0 0 0 0 0 0 0 | 8 |
| Ինը | 0 0 0 0 0 0 0 0 0 | 9 |

| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Մէկ | Երկու | Երեք | Չորս | Հինգ | Վեց | Եօթը | Ութը | Ինը |

## ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

1. Արտասանեցէք թիւերը մէկէն մինչեւ ինը, յետոյ հակադարձը, այսինքն իննէն մինչեւ մէկ։

2. Համրեցէք պատուհանին ապակիները։

3. Համրեցէք ձեր աջ ձեռքին մատները։

4. Համրեցէք առաջին դրասեղանին վրայ նստող աշակերտները։

5. Համրեցէք դասարանին պատուհանները։

6. Համրեցէք պատէն կախուած աշխարհացոյցերը։

7. Քանի՞ գիր կայ տետրակ բառին մէջ։

8. Քանի՞ գիր կայ Սաքենիկ բառին մէջ։

9. Համրեցէք ձեր թիկնոցին կոճակները։

10. Գրել թիւերը մէկէն մինչեւ ինը, նախ գըրերով, յետոյ թուանշաններով։

11. Թուանշաններով գրել հետեւեալ թիւերը. ութ բարի նիշ, հինգ տետրակ, երեք կարկանդակ, վեց սեղան, ինը մատիտ, երկու կօշիկ, եւայլն։

12. Թուանշաններով գրել թիւերը երեքէն մինչեւ ութ, հինգէն մինչեւ ինը, երկուքէն մինչեւ եօթը, եւայլն։

13. Համրել 2 առ 2 մինչեւ 8, սկսելով 2էն։

14. Համրել 2 առ 2 մինչեւ 9, սկսելով 1էն։

15. Ունիկ 3 խնձոր առաւ հօրմէն. քոյրը 1 խնձոր պակաս առաւ. քոյրը քանի՞ խնձոր ունի։

**16.** Ամէն մէկ ձեռքիս մէջ 2 ընկոյզ ունիմ. ամէնը քանի՞ ընկոյզ ունիմ։

**17.** Նուարդ 4 խնձոր ունի. Վիրգինէ անոր կէսին չափ ունի. քանի՞ խնձոր ունի Վերգինէ։

**18.** Մաքրուհի 4 տանձ ունէր. կէսը իր հօրեղբօրը տուաւ. հիմա ամէն մէկը քանի՞ տանձ ունի։

**19.** Գոհարիկ 4 ընկոյզ ունէր. 3 հատը կերաւ. քանի՞ հատ մնաց։

**20.** 1ին վրայ քանի՞ աւելցնելով 4 կ'ունենանք։

**21.** Քանի՞ կ'ունենանք, երբ 1ին վրայ 3, 2ին վրայ 2, 3ին վրայ 1 աւելցնենք։

**22.** 4 ունենալու համար 2ին վրայ քանի՞ աւելցնելու է, 1ին վրայ քանի՞ աւելցնելու է։

**23.** Սաթենիկ 2 գրիչ ունի. քոյրը 1 գրիչ աւելի ունի. երկուքը մէկտեղ քանի՞ գրիչ ունին։

**24.** Մէկ ձեռքիս մէջ 3 ընկոյզ ունիմ եւ միւսին մէջ 2. ամէնը քանի՞ ընկոյզ կ'ընէ։

**25.** Մաքրուհի 3 մատիտ ունի. եղբայրը 1 հատ պակաս ունի. երկուքը մէկտեղ քանի՞ մատիտ ունին։

**26.** Վերգինէ 5 ընկոյզ ունէր. 1 հատը կորսնցուց եւ 2 հատը կերաւ. քանի՞ հատ մնաց։

**27.** Սաթենիկ 5 խնձոր ունէր. 1 հատը եղբօրը տուաւ եւ մնացածին կէսը քրոջը տուաւ. դեռ քանի՞ խնձոր ունի։

**28.** Նշան 6 խնձոր ունէր. 2 հատը կերաւ. քանի՞ խնձոր ունի հիմա։

29. Ամէն մէկ ձեռքիս մէջ 3 ընկոյզ ունիմ. բոլորը քանի՞ ընկոյզ ունիմ։

30. Հայր մը իր 6 տղոց 6 տանձ բաժնել կ'ուզէ. ամէն մէկ տղայ քանի՞ տանձ պիտի ընդունի։

31. Մայր մը կ'ուզէ իր երեք աղջիկներուն 6 կծիկ թել բաժնել. ամէն մէկը քանի՞ կծիկ պիտի առնէ։

32. Զարուհի իր 6 ընկոյզները 3 հաւասար մասերու կը բաժնէ. ամէն մէկ մաս քանի՞ ընկոյզ կը պարունակէ։

33. Մեսրոպ 6 տարեկան է. քոյրը անոր կէս տարիքն ունի. Մեսրոպ քրոջմէն քանի՞ տարու աւելի մեծ է։

34. Մայրս 1 օրուան մէջ 1 շապիկ կը կարէ. 6 շապիկ կարելու համար քանի՞ օր աշխատելու է։

35. Մարտիկ 6 ընկոյզ ունէր. 2 հատը եղբօրը տուաւ. քանի՞ ընկոյզ մնաց իր քով։

36. Կարապետ 7 հատուած դաս սորվեցաւ եւ 2 հատուածը մոռցաւ. հիմա քանի՞ հատուած գիտէ։

37. Գարեգին սեղանին վրայ 7 ընկոյզ ունէր. ամէն մէկ ձեռքին մէջ 3 հատ առաւ. սեղանին վրայ քանի՞ հատ մնաց։

38. Ճամբորդութիւն մը ըրի որ մէկ շաբաթ տեւեց. քանի՞ օր ճամբորդեցի։

39. Մինաս 7 տարու է. եղբայրը 4 տարու է. Մինաս եղբօրմէն քանի՞ տարու աւելի մեծ է։

16. Ամէն մէկ ձեռքիս մէջ 2 ընկոյզ ունիմ. ամէնը քանի՞ ընկոյզ ունիմ։

17. Նուարդ 4 խնձոր ունի. Վիրգինէ անոր կէսին չափ ունի. քանի՞ խնձոր ունի Վերգինէ։

18. Մաքրուհի 4 տանձ ունէր. կէսը իր հօրեղբօրը տուաւ. հիմա ամէն մէկը քանի՞ տանձ ունի։

19. Գոհարիկ 4 ընկոյզ ունէր. 3 հատը կերաւ. քանի՞ հատ մնաց։

20. 1ին վրայ քանի՞ աւելցնելով 4 կ'ունենանք։

21. Քանի՞ կ'ունենանք, երբ 1ին վրայ 3, 2ին վրայ 2, 3ին վրայ 1 աւելցնենք։

22. 4 ունենալու համար 2ին վրայ քանի՞ աւելցնելու է, 1ին վրայ քանի՞ աւելցնելու է։

23. Սաթենիկ 2 գրիչ ունի. քոյրը 1 գրիչ աւելի ունի. երկուքը մէկտեղ քանի՞ գրիչ ունին։

24. Մէկ ձեռքիս մէջ 3 ընկոյզ ունիմ եւ միւսին մէջ 2. ամէնը քանի՞ ընկոյզ կ'ընէ։

25. Մաքրուհի 3 մատիտ ունի. եղբայրը 1 հատ պակաս ունի. երկուքը մէկտեղ քանի՞ մատիտ ունին։

26. Վերգինէ 5 ընկոյզ ունէր. 1 հատը կորսնցուց եւ 2 հատը կերաւ. քանի՞ հատ մնաց։

27. Սաթենիկ 5 խնձոր ունէր. 1 հատը եղբօրը տուաւ եւ մնացածին կէսը քրոջը տուաւ. դեռ քանի՞ խնձոր ունի։

28. Նշան 6 խնձոր ունէր. 2 հատը կերաւ. քանի՞ խնձոր ունի հիմա։

29. Ամէն մէկ ձեռքիս մէջ 3 ընկոյզ ունիմ. բոլորը քանի՞ ընկոյզ ունիմ։

30. Հայր մը իր 6 տղոց 6 սանձ բաժնել կ'ուզէ. ամէն մէկ տղայ քանի՞ սանձ պիտի ընդունի։

31. Մայր մը կ'ուզէ իր երեք աղջիկներուն 6 կծիկ թել բաժնել. ամէն մէկը քանի՞ կծիկ պիտի առնէ։

32. Զարուհի իր 6 ընկոյզները 3 հաւասար մասերու կը բաժնէ. ամէն մէկ մաս քանի՞ ընկոյզ կը պարունակէ։

33. Մեսրոպ 6 տարեկան է. քոյրը անոր կէս տարիքն ունի. Մեսրոպ քրոջմէն քանի՞ տարու աւելի մեծ է։

34. Մայրս 1 օրուան մէջ 1 շապիկ կը կարէ. 6 շապիկ կարելու համար քանի՞ օր աշխատելու է։

35. Մարտիկ 6 ընկոյզ ունէր. 2 հատը եղբօրը տուաւ. քանի՞ ընկոյզ մնաց իր քով։

36. Կարապետ 7 հատուած դաս սորվեցաւ եւ 2 հատուածը մոռցաւ. հիմա քանի՞ հատուած գիտէ։

37. Գարեգին սեղանին վրայ 7 ընկոյզ ունէր. ամէն մէկ ձեռքին մէջ 3 հատ առաւ. սեղանին վրայ քանի՞ հատ մնաց։

38. Ճամբորդութիւն մը ըրի որ մէկ շաբաթ տեւեց. քանի՞ օր ճամբորդեցի։

39. Մինաս 7 տարու է. եղբայրը 4 տարու է. Մինաս եղբօրմէն քանի՞ տարու աւելի մեծ է։

**40.** Բարսեղին 2 ընկոյզ ունի, Թորոս 3 եւ Համբարձում 2. բոլորը քանի՞ ընկոյզ կ'ընէ։

**41.** Աշոտ 3 տարեկան է. քոյրը 4 տարու աւելի մեծ է. քոյրը քանի՞ տարու է։

**42.** Երկու ճամբորդութիւն ըրի. մին 3 օր տեւեց, միւսը 4 օր. քանի՞ օր ճամբորդութիւն ըրած եմ։

**43.** Մելքոն 5 խնձոր ունի. Ներսէս անկէ 2 խնձոր պակաս ունի. քանի՞ խնձոր ունի Ներսէս. երկուքը մէկտեղ քանի՞ խնձոր ունին։

**44.** Յովսէփ 8 խնձոր ունի. 1 հատը եղբօրը կուտայ և 2 հատը քրոջը. իրեն քով քանի՞ հատ կը մնայ։

**45.** Նիկողոս 4 ական թերթով 2 տետրակ պիտի շինէ. քանի՞ թերթ թուղթ ունենալու է։

**46.** Ամէն մէկ ձեռքիս մէջ 4 գրիչ ունիմ. բոլորը քանի՞ գրիչ կ'ընէ։

**47.** Նշան 5 խնձոր ունի. Մկրտիչ 1 խնձոր պակաս ունի. քանի՞ խնձոր ունի Մկրտիչ. երկուքը մէկտեղ քանի՞ խնձոր ունին։

**48.** Յովհաննէս 9 ընկոյզ ունի. 3 մասի կը բաժնէ. առաջին մասը կը պարունակէ 2 ընկոյզ, երկրորդ մասը 1 ընկոյզ աւելի կը պարունակէ, եւ երրորդ մասը երկրորդէն 1 ընկոյզ աւելի կը պարունակէ. ամէն մէկ մասին մէջ քանի՞ ընկոյզ կայ։

**49.** Քանի՞ օրէն 9 հատուած դաս պիտի սորվիս, եթէ օրը 3 հատուած միայն կրնաս սորվիլ։

**50.** Ցովսէփ 9 թերթ թուղթ ունի․ կ՚ուզէ անոնցմով 2 տետրակ շինել․ ամէն մէկ տետրակը քանի՞ թերթ թուղթ պիտի պարունակէ։

**51.** Քանի՞ շապիկ կրնանք շինել 9 կանգուն կտաւով, եթէ մէկ շապիկի համար 2 կանգուն կըտաւ պէտք ըլլայ։

**52.** Համբարձում 9 նուշ ունէր․ 3 հատը կերաւ եւ 3 հատը եղբօրը տուաւ․ քանի՞ հատ մնաց իրեն։
— Առաջին թուոյն քանի՞ երրորդ մասը մնաց։

**53.** Քանի՞ աւելցնելու ենք 8ին, 7ին, 6ին, . . . վրայ, 9 ունենալու համար։

**54.** Քանի՞ կը մնայ, երբ 9էն 1, 2, 3 . . . 8 հանենք։ Քանի՞ կը մնայ, երբ 9էն 9 հանենք։

---

## + ԵՒ = ՆՇԱՆՆԵՐԸ

+ կը նշանակէ աւելի։
= կը նշանակէ հաւասար։
3+2=5 կը կարդացուի՝ 3 աւելի 2 հաւասար 5։
Ասիկա կը նշանակէ թէ 3ին վրայ եթէ 2 աւելցընենք, 5 կ՚ունենանք։

Իրարու վրայ աւելցուցէք սա թիւերը, եւ ինչ որ գտնէք, = նշանին աջին գրեցէ՛ք.

| | | | |
|---|---|---|---|
| 3+2= | \| \| \| | \| \| | =5 |
| 3+3= | | | = |
| 4+4= | | | = |
| 4+3= | | | = |

| | |
|---|---|
| 3+4= | = |
| 6+3= | = |
| 5+4= | = |
| 3+5= | = |
| 2+4= | = |
| 1+8= | = |

*Հետեւեալ թիւերն իրարու վրայ աւելցուցէք՝ առանց գիծերը քաշելու, եւ անմիջապէս արդիւնքը գըրեցէք.*

| | | |
|---|---|---|
| 4+2=6 | 4+5= | 2+2+2=6 |
| 4+3= | 6+2= | 3+3+1= |
| 5+3= | 3+6= | 4+3+2= |
| 2+6= | 2+5= | 5+2+1= |
| 5+1= | 4+4= | 6+1+2= |
| 2+7= | 3+2= | 1+3+4= |
| 3+4= | 1+4= | 2+4+3= |

## — ՆՇԱՆԸ

*— այս նշանին անունն է պակաս։*

3—1 *կը կարդացուի* 3 *պակաս* 1, *եւ կը նշանակէ թէ* 3*էն* 1 *պիտի պակսեցնենք։*

3—1=2 *կը կարդացուի՝* 3 *պակաս* 1 *հաւասար* 2 *ասիկայ կը նշանակէ թէ, եթէ* 3*էն* 1 *պակսեցնենք կը մնայ* 2։

## ՎԱՐԺՈՒԹԻՒՆՆԵՐ

3—1= | | | էն հանել . | =2
4—1= =
5—2= =
7—3= =
6—3= =
8—2= =
9—6= =
7—3= =
5—4= =

5—2—2= 5էն հանել 2, յետոյ դարձեալ 2=1
8—5—2= =
7—2—3= =
9—4—3= =
7—3—2= =

| | | |
|---|---|---|
| 9—8=1 | 8—5= | 5—2= |
| 7—3= | 9—8= | 8—5= |
| 9—5= | 6—3= | 7—6= |
| 8—4= | 9—3= | 8—2= |
| 9—4= | 5—3= | 5—4= |

| | | |
|---|---|---|
| 6+3—5= | 8—5—1= | 6+3—1= |
| 7—3—2= | 9—4—3= | 9—9+8= |
| 8—4—2= | 7—1—4= | 5+4—5= |
| 9—5—1= | 6—2—3= | 9—8+8= |
| 8—6—2= | 5—1—4= | 4—4+6= |
| 3+5—6= | 4+5—4= | 5+4—2=[1] |

(1) Ուսուցիչն այսօրինակ ուրիշ վարժութիւններ ևս ընել տալու է. նախ ծանր ծանր եւ որոշ կերպով ըսելու է « 6 աւել 4, պակաս 5 », եւ պահանջելու է որ անմիջապէս պատասխանեն.



# O

Ասոր անունն է ԶԷՐՕ։

ԶԷՐՕ կը նշանակէ ՈՉԻՆՉ։

2 ընկոյզ ունէի. առաջ 1 հատը կերայ, մնաց 1 հատ. ետքէն այս 1 հատն ալ կերայ, ոչինչ մնաց, այսինքն բան չի մնաց։ Ասիկայ նշանով մը հասկցը-նելու համար կը գրեմ O։

## ՀԱՐՑՈՒՄՆԵՐ

5 ընկոյզ ունէի, 2 հատը կերայ. քանի՞ հատ մնաց։ Մնացած 3 ընկոյզը քրոջս տուի. ի՞նչ մնաց քովս։ Ոչինչ։ Ի՞նչպէս պիտի գրենք ասիկայ։

8 ղրուշ ունէի, Պօղոսին տուի. քովս ի՞նչ մնաց։ Ոչինչ։ Ի՞նչ նշանով պիտի գրենք այս ոչինչը։

Տանձ մը ունէի, կերայ. հիմա քանի՞ տանձ ու-նիմ։ Ի՞նչ նշան պիտի դնեմ, հասկցնելու համար թէ ա՛լ տանձ չունիմ։

1 տանձին վրայ քանի՞ տանձ աւելցնելու է՝ 2 տանձ ունենալու համար։ — Քանի՞ հատ ուտեմ-նէ՝ 0 կը մնայ։

2 նուշ ունիմ. մէկ հատը՛ ուտեմնէ, քանի՞ նուշ կը մնայ։ Մէկ հատ ալ ուտեմնէ՞։

Ի՞նչ է զէրօյին արժէքը։

*Ի՞նչ կ՚ընէ 1+ ոչինչ։ — Ի՞նչ կ՚ընէ ոչինչ +1։*
*Ի՞նչ կ՚ընէ 5+0։ — Ի՞նչ կ՚ընէ 0+4։*

| | | |
|---|---|---|
| 3—3= | 4—2—2= | 8—8= |
| 9—9= | 5—3—2= | 4—4= |
| 5—5= | 2+7—9= | 1—1= |

---

### ԳԱՐՁ ՀԱՇԻՒՆԵՐ [1]

*Պատկեր մը 1 ղրուշ[2] արժէ նէ, երկու պատկեր քանի՞ ղրուշ կ՚արժեն։*

*Օննիկ 2 ղրուշ ունի. եթէ մէկ ղրուշը կորսնցընէ, քանի՞ ղրուշ կը մնայ։ — Եթէ 2 ղրուշն ալ կորսնցնէ, քանի՞ ղրուշ կը մնայ։*

*Մարգար 2 թուղթ դաս սորվեցաւ. իր քոյրը 1 թուղթ աւելի սորվեցաւ. քանի՞ թուղթ սորվեցաւ քոյրը։*

---

[1] *Տղայք պարտին այս խնդիրները բանաւոր կերպով կատարել։ Միայն խնդրոց մէջ եղած թուանշանները գրելու են տախտակին վրայ։ Տղոց՝ թիւերու արժէքին յստակ գաղափարը տալու եւ անոնց բաղադրութիւնները իրենց հասկցնելու համար, վերացեալ բացատրութիւններ պէտք չէ տալ. առարկայից դէմ յանդիման տեսութիւնը՝ կամ թէ ըսենք՝ իրատեսութիւնը միայն պէտք է գործածել։ Սակայն, երբ տղան այլ եւս առանց իրատեսութեան կարող է ըմբռնել թիւերը, պէտք է շարունակել զայն։*

[2] *Տղուն հասկցնել թէ ի՞նչ բան է ղրուշ ըսուածը, եւ այս առթիւ դրամի գաղափարը տալ։*

Ալեքսան քանի՞ գրչաքար կրնայ գնել 2 ղրուշով, եթէ 1 գրչաքարը 1 ղրուշ արժէ։

Աւետիս 1 ղրուշ ունի․ եղբայրն ունի իրեն երկու անգամը․ եղբայրը քանի՞ ղրուշ ունի։

Գրիգոր 2 ղրուշ ունի․ եղբայրը 2 ղրուշ պակաս ունի․ եղբայրը քանի՞ ղրուշ ունի։

Վիքթոր 2 ղրուշ առաւ, եւ եղբայրը 1 ղրուշ պակաս․ եղբայրը քանի՞ ղրուշ ունի։

1ին կրկինը[1] ինչ է։ — 2ին կէսը ինչ է։

---

Մինաս 1 ղրուշնոց մը եւ 2 ղրուշնոց մ՚ունի․ քանի՞ ղրուշ ունի ամէնը։

Գալուստ 2 քոյր ունի․ մին 1 տարեկան է, միւսը 2 տարու աւելի է․ միւս քոյրը քանի՞ տարու է։

Գառնիկ 3 ղրուշ ունի․ 2 ղրուշի թուղթ գրիչ գնեց․ քանի՞ ղրուշ մնաց իրեն քով։

Միհրանին հայրը աղքատի մը 2 ղրուշ տուաւ եւ ուրիշ աղքատի մ՚ալ 1 ղրուշ․ ամէնը քանի՞ ղրուշ տուաւ։

Մէկ պատկերը 1 ղրուշ կ՚արժէ․ քանի՞ ղրուշ կ՚արժէ 3 պատկերը։

Մէկ խաղալիքը 3 ղրուշ կ՚արժէ, 1 պատկերը 3 անգամ քիչ կ՚արժէ․ մէկ պատկերը քանի՞ ղրուշ կ՚արժէ։

---

[1] Նոր գրով գրուած բառերը բացատրել։

Սարգիս քանի՞ պատկեր կրնայ գնել 3 ղրուշով, եթէ պատկերը 1 ղրուշ արժէ։

Վերգինէ քանի՞ տետրակ կրնայ գնել 3 ղրուշով, եթէ 1 տետրակը 1 ղրուշ արժէ։

Օննիկ 3 ղրուշ ունէր. 1 ղրուշով տանձ գնեց եւ 2 ղրուշով կաղին գնեց. իրեն քով քանի՞ ղրուշ մնաց։

Վիքթոր 3 խաղալիք պիտի առնէ. 1 խաղալիքը 1 ղրուշ կ'արժէ. քանի՞ ղրուշ պիտի տայ։

Մաննիկ 2 թուղթ դաս սորվեցաւ. իր քոյրը անոր կրկինը սորվեցաւ. քոյրը քանի՞ թուղթ սորվեցաւ։

Եթէ 1 չիչ մելանը 2 ղրուշ արժէ, 2 չիչ մելանը քանի՞ ղրուշ կ'արժէ։

2ին վրայ ի՞նչ թիւ աւելցնելու է՝ 3 ունենալու համար։

3էն քանի՞ հանելու է՝ 1 ունենալու համար։

1ին վրայ քանի՞ աւելցնելով 3 կ'ունենանք։

1+2 ի՞նչ կ'ընէ։ 2+1 ի՞նչ կ'ընէ։

Քանի՞ կ'ընէ 3—1։ Քանի՞ կ'ընէ 3—2։

1ին եռապատիկն ի՞նչ է։

2ին երրորդ[1] մասն ի՞նչ է։ Ի՞նչ է 3ին կէսը։

---

[1] Բացատրել երրորդ մաս, հինգերորդ մաս, եւայլն, բառերը, առարկայ մը երեք, հինգ, եւայլն, հաւասար մասերու բաժնելով։

Արուսեակ 4 դրուշ ունէր. 1 դրուշը կորսնցուց. քանի՞ դրուշ մնաց։

Աղաւնի իր մօրմէն 2 հատ 2 դրուշնոց առաւ. քանի՞ դրուշ ունի։

Եթէ 1 պատկերը 1 դրուշ արժէ, 4 պատկերը քանի՞ դրուշ կ՚արժէ։

Եթէ 1 կաղամարը 1 դրուշ արժէ, քանի՞ կաղամար կրնանք գնել 4 դրուշով։

4ին մէջ քանի՞ անգամ 2 կայ. քանի՞ անգամ 1 կայ։

Եթէ մէկ հացը 1 դրուշ ըլլայ, քանի՞ հաց կրնանք գնել 4 դրուշով։

Գէորգ 2 հատ 2 դրուշնոց առաւ՝ թաշկինակ մը գնելու համար, եւ 1 դրուշ ետ առաւ. թաշկինակը քանի՞ դրուշ արժեց։

Տուփ մը գրչածայրը 2 դրուշ կ՚արժէ. ի՞նչ կ՚արժէ 2 տուփը։

Երկու զոյգ գուլպան 4 դրուշ կ՚արժէ. ի՞նչ կ՚արժէ 1 զոյգ գուլպան։

Ի՞նչ է 2ին կրկինը։ Ի՞նչ է 1ին քառապատիկը։

4ը ո՞ր թուոյն կրկինն է եւ ո՞ր թուոյն քառապատիկն է։

2ը ո՞ր թուոյն կէսն է։

1ը ո՞ր թուոյն չորրորդ մասն է։

Մէկ օխա կաղինը 4 ղրուշ կ՚արժէ. քանի՞ ղրուշ կ՚արժէ կէս օխան, քառորդ օխան[1]։



Կշիռ

Երուանդ 5 ղրուշնոց մ՚ունի, եղբայրը 2 հատ 2 ղրուշնոց եւ 1 ղրուշնոց մ՚ունի. ո՞վ աւելի դրամ ունի։

Յարութիւն 5 ղրուշ ունի. քանի՞ հատ 1 ղրուշնոց հաց կրնայ գնել։

Քաջիկ 2 խնձոր ունի. 2 հատ Գրիգոր ունի, եւ Ալիքսան Գրիգորէն 1 խնձոր պակաս ունի. ամէնը քանի՞ խնձոր կ՚ընէ։

---

[1] Բացատրել թէ ի՞նչ է կշիռը եւ ի՞նչպէս կը գործածուի։

Եթէ 1 հացը 1 ղրուշ արժէ, 5 ղրուշով քանի՞ հաց կրնանք գնել։

Եթէ 1 պատկերը 1 ղրուշ արժէ, քանի՞ ղրուշ կ'արժէ 5 պատկերը։

Ներսէս 2 թռչուն գնեց եւ 5 ղրուշ տուաւ վաճառականին, որ իրեն 1 ղրուշ ետ տուաւ. ի՞նչ արժեց 1 թռչունը։

Յակոբ 2 ղրուշով տետրակ մը գնեց, 2 ղրուշով շիշ մը թանաք, եւ 1 ղրուշով գծոց մը. ամէնը քանի՞ ղրուշ ծախսեց։

---

## × ՆՇԱՆԸ

Ասիկայ նշան մ'է որ կը գործածուի անգամ բառին տեղ։

5×1 կը նշանակէ 5 անգամ 1, 5 հատ 1։

5×1= կը նշանակէ թէ 5 հատ 1ին քանի՞ ըլլալը հասկնալ կ'ուզուի։ 5 հատ 1, կամ թէ ըսենք, 5 անգամ 1 կ'ընէ 5։ Ուրեմն = նշանին առջեւը 5 գրելու է, այսպէս. 5×1=5։ Ասիկայ կը կարդացուի՝ 5 անգամ 1 հաւասար 5։

Գտէք հետեւեալ հարցումներուն պատասխանները[1].

---

[1] Ուսուցիչը թուոց բազում բաղադրութիւններ առաջարկելու է հետզհետէ զորս տղայք մէկ կողմանէ պարտին լուծել։ Օրինակ. [1+2+1—1—1+2—3+2+1—4]=0։ Վերջին թիւն արտասանուածին պէս՝ տղան

$1+1+1+1+1=$…։ $5\times1=$… $5-1-1-1-1=$…։
$2+2+2-1=$… $2\times2+1=$… $5-2-2=$…։
$3+2=$… $2+3=$…։ $1\times3+2=$…։
$5-3=$…։ $5-2=$…։ $5-1=$…։
$4+1=$…։ $1+4=$…։ $1\times4+1=$…։ $5-4=$…։

4ին, 3ին, 2ին, 1ին վրայ ի՞նչ թիւ աւելցընելու է՝ 5 ունենալու համար։

5էն ի՞նչ թիւ հանելու է՝ 4, 3, 2, 1 ունենալու համար։

Քանի՞ կ'ընէ $1+4$, $2+3$, $3+2$, $4+1$։
Քանի՞ կ'ընէ $5-1$, $5-2$, $5-3$, $5-4$, $5-5$։
Քանի՞ կ'ընէ $5-2\times1$, $5-3\times1$, $5-4\times1$։
Քանի՞ կ'ընէ $1\times1+1$, $2\times1+1$, $3\times1+1$, $4\times1+1$.
Քանի՞ կ'ընէ $1\times5$, $5\times1$, $2\times2+1$։

1ին հնգապատիկն ի՞նչ է։ 1ը ո՞ր թուոյն հինգերորդ մասն է։

---

գործողութեան արդիւնքն ունենալու է։ Միակ տղայ մը պէտք է պատասխանէ. իսկ ընկերներէն անոնք որ միեւնոյն արդիւնքը գտած են, կը բարձրացնեն իրենց ձեռքը՝ ցուցընելու համար թէ գտնուած պատասխանը ճիշդ է։ Այս միջոցը տղան միշտ ուշադիր կը պահէ եւ ընդմիջմանց առաջքը կ'առնու։ Այս հրահանգները պէտք է շարունակուին մինչեւ որ տղան առանց դժուարութեան զանոնք կատարէ։ Մէկ աստիճանէն միւսին անցնելու չէ մինչեւ որ իմացականութիւնը բաւական չի զարգանայ։ Որչափ յամր երթան տղայք, յառաջդիմութիւնն այնքան արագ կ'ըլլայ։ Իմացականութիւնը տունկի մը կը նմանի. կը զարգանայ, բայց անզգալի կերպով, եւ իւր օրէնքներն արհամարհել է՝ անկէ խիստ արագ զարգացում մը պահանջելը։

## ԴԱՐՁ ՀԱՇԻՒՆԵՐ

3 հատ 2 ղրուշնոցը քանի՞ ղրուշ կ՚ընէ։

Հայր մը Գառնիկին թերթ մը թուղթ կուտայ․ Յովհան Գառնիկէն 1 թերթ աւելի կ՚ընդունի եւ Պետրոս Յովհանէն 1 թերթ աւելի․ քանի՞կան թերթ թուղթ ունին․ երեքը մէկտեղ քանի՞ թերթ թուղթ ունին։

Յարութիւն 6 ծաղիկ ունի․ կէսը իր մօրը կուտայ եւ մնացածին երրորդ մասը իր հօրը․ իրեն քանի՞ ծաղիկ կը մնայ։

Մէկ օխա խնձորը 3 ղրուշ կ՚արժէ․ քանի՞ ղրուշ կ՚արժէ 2 օխան․ քանի՞ ղրուշ կ՚արժէ կէս օխան։

Մէկ օխա խաղողը 2 ղրուշ կ՚արժէ․ քանի՞ ղրուշ կ՚արժէ 2 օխան․ քանի՞ ղրուշ կ՚արժէ 3 օխան։

6 ղրուշով քանի՞ պատկեր կրնանք գնել, եթէ 1 պատկերը 3 ղրուշ արժէ։

Քանի՞ խաղալիք կրնանք գնել 6 ղրուշով, եթէ 1 խաղալիքը 2 ղրուշ արժէ։

6ին մէջ քանի՞ հատ 2 կայ։

6 խնձոր ունիմ․ ձեր երեքին մէջ պիտի բաժնեմ․



Քանի՞ կան խնձոր պէտի ունենանք։



6 կանգուն կտաւով քանի՞ շապիկ կը շինուի, եթէ 1 շապիկ շինելու համար 2 կանգուն կտաւ պէտք ըլլայ։

6ին մէջ քանի՞ անգամ 3 կայ։

6 ղրուշով քանի՞ գաւաթ կրնանք գնել, եթէ 1 գաւաթը 3 ղրուշ արժէ։

Մանուկ թաշկինակ մը գնեց 2 ղրուշով, եւ 2 հատ ալ սանտր գնեց՝ հատը 2 ղրուշի. ո՞րչափ կը պարտի։

Յարութիւն 3 օր հիւանդ եղաւ, Մկրտիչ 2 անգամ աւելի օր. Մկրտիչին հիւանդութիւնը քանի՞ օր տեւեց։

Մէկ գմելինը 2 ղրուշ կ'արժէ. 3 գմելինը քանի՞ ղրուշ կ'արժէ։

1+1+1+1+1+1= . . . ։ 6×1= . . . ։ 6—1= . . . ։
6—1—1—1—1—1= . . . ։
2+2+2= . . . ։ 3×2= . . . ։ 6—2—2= . . . ։
3+3= . . . ։ 2×3= . . . ։ 6—3= . . . ։ 6—2= . . . ։
4+2= . . . ։ 2+4= . . . ։ 1×4+2= . . . 6—4= . . . ։
5+1= . . . . 1+5= . . . 1×5+1= . . . ։ 6—5= . . . ։
Ինչ կ'ընէ 1+5. 2+4. 3+3. 4+2. 5+1։
Ինչ կ'ընէ 6—1. 6—2. 6—3. 6—4. 6—5։

5ին վրայ քանի՞ աւելցնելու է որ 6 ունենամ։
4ին » » է որ 6 »
3ին » » է որ 6 »
2ին » » է որ 6 »
1ին » » է որ 6 »

6էն քանի՞ հանելու է որ 5 ունենամ։
6էն » » է որ 4 »
6էն » » է որ 3 »
6էն » » է որ 2 »
6էն » » է որ 1 »
6էն » » է որ 0 »

Քանի՞ կը մնայ, երբ 6էն 2×1. 3×1. 4×1. 5×1 հանենք։

Ի՞նչ կ'ընէ 2×2+2. 1×2+2×2։

1ին վեց անգամը, 2ին եռապատիկը, 3ին կրկինն ի՞նչ է։

---

Խաչիկ 5 ղրուշնոց մը եւ 2 ղրուշնոց մ'առաւ. Ռուբէն 3 հատ 2 ղրուշնոց եւ 1 ղրուշնոց մ'առաւ. ո՞վ աւելի դրամ ունի։

Հայր մ'իր երկու որդիներէն ամէն մէկուն 2 ղրուշնոց մը կուտայ, եւ իր երեք աղջիկներէն ամէն մէկուն 1 ղրուշ. ամէնը քանի՞ ղրուշ կ'ընէ։

Եթէ մէկը օրը 1 ղրուշ խնայէ, մէկ շաբթուան մէջ քանի՞ ղրուշ խնայած կ'ըլլայ։

Մէկ պատկերը 1 ղրուշ կ'արժէ. քանի՞ ղրուշ կ'արժէ 7 պատկերը։

*Մէկ օխա խնձորը 2 ղրուշ կ'արժէ. քանի՞ օխա խնձոր կ'առնուի 7 ղրուշով։*

*Մէկ ձմերուկը 2 ղրուշ կ'արժէ. քանի՞ ձմերուկ կրնանք գնել 7 ղրուշով։*



Ահա 3 գիրք մէկ կարգի վրայ եւ 4 գիրք ուրիշ կարգի մը վրայ :

Զանոնք ամէնքը մէկ կարգի վրայ կը շարեմ, համրելով 1, 2, 3, 4, եւայլն :



Կը տեսնե՞ս, մէկ կարգի վրայ դրի 7 գիրք (*գումար*) :

*Մէկ կարկանդակը 3 ղրուշ կ'արժէ. քանի՞ կարկանդակ կրնանք գնել 7 ղրուշով։*

7 կանգուն կտաւով քանի՞ շապիկ կը շինուի, եթէ մէկ շապիկի համար 2 կանգուն կտաւ պէտք ըլլայ։



7 կարկանդակ ունիմ.



Շունը կերաւ 3 հատ. Ինծի մնաց 4 հատ :

Ներսէս 7 ղրուշ ունէր, 5 ղրուշը կորսնցուց. քանի՞ ղրուշ ունի հիմա։

1+1+1+1+1+1+1= . . . . 7×1= . . . .

7—1—1—1—1—1—1= . . . . 7—2—2—2= . . . .

2+2+2+1= . . . . 3×2+1= . . . .

3+3+1= . . . . 2×3+1= . . . . 7—3—3= . . . .

4+3= . . . . 3+4= . . . 1×4+3= . . . .

7—4= . . . . 7—3= . . . . 7—2= . . . . 7—1= . . . .

5+2= . . . . 2+5= . . . . 1×5+2= . . . . 7—5= . . . .

6+1= . . . . 1+6= . . . . 1×6+1= . . . . 7—6= . . . .

6ին վրայ՝ քանի՞ աւելցնելու է որ 7 ունենամ։
5ին » » » է որ 7 »
4ին » » » է որ 7 »
3ին » » » է որ 7 »
2ին » » » է որ 7 »
1ին » » » է որ 7 »

7էն քանի՞ հանելու է որ 6 ունենամ։
7էն » » է որ 5 »
7էն » » է որ 4 »
7էն » » է որ 3 »
7էն » » է որ 2 »
7էն » » է որ 1 »

7էն 1 հանեմ նէ, ի՞նչ կը մնայ։
7էն 2 » , » »
7էն 3 » , » »
7էն 4 » , » »
7էն 5 » , » »
7էն 6 » , » »

Քանի՞ կ՚ընէ 2×1+5, 2×3+1, 1×7, 7×1։
Մի եօթն անգամն ի՞նչ է։
7ին եօթներորդ մասն ի՞նչ է։

---

Օննիկ ստացաւ 4 հատ 2 ղրուշնոց․ քանի՞ ղրուշ ունի։

Սիմոն 8 ծաղիկ ունի․ կէսը իր մօրը կուտայ եւ քառորդը իր հօրը․ իրեն քանի՞ ծաղիկ կը մնայ։

Սահակ 8 կաղին ունի եւ կ'ուզէ զանոնք 4 հաւասար մասերու բաժնել․ ամէն մէկ մաս քանի՞ կաղին պիտի պարունակէ։

Եթէ մէկ պատկերը 1 ղրուշ արժէ, 8 պատկերը քանի՞ ղրուշ կ'արժէ։

8 ղրուշով քանի՞ պատկեր կրնանք գնել, եթէ մէկ պատկերը 1 ղրուշ արժէ։

Եթէ մէկ թաշկինակը 2 ղրուշ արժէ, ի՞նչ կ'արժէ 4 թաշկինակը։

Քանի՞ թաշկինակ կրնանք գնել 8 ղրուշով, եթէ 1 թաշկինակը 2 ղրուշ արժէ։

1 փողկապը 3 ղրուշ կ'արժէ եւ 1 թաշկինակը 2 ղրուշ․ քանի՞ ղրուշ կ'արժեն 2 փողկապ եւ 1 թաշկինակ։

Եթէ մէկ փողկապը 3 ղրուշ արժէ, քանի՞ հատ կրնանք գնել 8 ղրուշով, եւ քանի՞ ղրուշ կ'աւելնայ։

Եթէ մէկ գիրքը 4 ղրուշ արժէ, քանի՞ կ'արժէ 2 գիրքը։

8 ղրուշով քանի՞ գիրք կրնանք գնել, եթէ 1 գիրքը 4 ղրուշ արժէ։

8 կանգուն կտաւով քանի՞ շապիկ կը շինուի, եթէ 1 շապիկի համար 2 կանգուն պէտք ըլլայ։

Ծննիկ 4 տարեկան է․ Սիմոն անոր կրկին տարիքն ունի․ ի՞նչ է Սիմոնին տարիքը։

Պօղոս 4 անգամ մեծ է իր քրոջմէն որ 2 տարեկան է․ ի՞նչ է Պօղոսին տարիքը։

Իսկուհի զոյգ մը գուլպայի համար կծիկ մը բուրդ կը գործածէ․ 4 կծիկով քանի՞ գուլպայ կըրնայ հիւսել։

1 զոյգ գուլպան 4 ղրուշ կ՚արժէ․ ի՞նչ կ՚արժէ 2 զոյգը եւ ի՞նչ կ՚արժէ ամէն մէկ գուլպան։

Աստուր 8 ղրուշ ունի․ 3 ղրուշով փողկապ մը պիտի գնէ եւ 4 ղրուշով գիրք մը․ բաւական դրամ ունի՞ եւ քանի՞ ղրուշ կ՚աւելնայ։

8 ղրուշը քանի՞ հատ 2 ղրուշնոց կ՚արժէ։

Գառնիկ 8 ղրուշով 2 պատկեր պիտի գնէ․ 1 պատկերը քանի՞ ղրուշ պիտի արժէ։

Նիկողոս, որ 8 տարեկան է, Միհրանէն 2 անգամ աւելի տարիք ունի։ Միհրան քանի՞ տարու է։

1+1+1+1+1+1+1+1= . . . ։ 8×1= . . . ։

8—1—1—1—1—1—1—1= . . . ։

2+2+2+2= . . . ։ 4×2= . . . ։ 8—2—2—2= . . . ։

3+3+2= . . . ։ 2×3+2= . . . ։ 8—3—3= . . . ։

4+4= . . . 2×4= . . . 8—4= . . . ։

5+3= . . . 3+5= . . . 1×5+3= . . . ։

8—5= . . . 8—3= . . . 8—1= . . . ։

6+2= . . . 2+6= . . . 1×6+2= . . . ։

8—7= . . . 8—6= . . . 8—2= . . . ։

7+1= . . . 1+7= . . . 1×7+1= . . .

1×4+4×1= . . . ։

7ին վրայ քանի՞ աւելցնելու է որ 8 ունենամ։
6ին » » » է որ 8 »
5ին » » » է որ 8 »
4ին » » » է որ 8 »
3ին » » » է որ 8 »
2ին » » » է որ 8 »
1ին » » » է որ 8 »

8էն քանի՞ հանելու է որ 7 ունենամ։
8էն » » է որ 6 »
8էն » » է որ 5 »
8էն » » է որ 4 »
8էն » » է որ 3 »
8էն » » է որ 2 »
8էն » » է որ 1 »

Ի՞նչ է 2ին քառապատիկը, 4ին կրկինը։

---

Քանի՞ կ'ընէ 1+7, 2+6, 3+5... 7+1։
Քանի՞ կ'ընէ 8—1, 8—2, 8—3... 8—7։
Քանի՞ կ'ընէ 1×1+7, 2×1+6, 3×1+5, 4×1+4, 5×1+3, 6×1+2, 7×1+1։
Քանի՞ կ'ընէ 8—1×1, 8—2×1, 8—3×1, 8—4×1, 8—5×1, 8—6×1, 8—7×1, 8—8×1։
Քանի՞ կ'ընէ 1×2+2, 2×2+2, 3×2+2։
Քանի՞ կ'ընէ 8—1×2, 8—2×2, 8—3×2, 8—4×2։
Քանի՞ կ'ընէ 1×3+2, 1×3+3, 8—1×3, 8—2×3։
Քանի՞ կը մնայ, երբ 2×4էն 1×4, 2×3 հանենք
Քանի՞ կ'ընէ 2 անգամ 2, էվել 4 անգամ 1։

1×2+3×2, 1×8. 8×1. 2×4, 4×2։

8ին մէջ քանի՞ անգամ 1 կայ. քանի՞ անգամ 2 կայ. քանի՞ անգամ 4 կայ։

---

Քանի՞ կ՚ընէ 4 անգամ 2, աւելի 1։

Անդրանիկ 4 հատ 2 ղրուշնոց եւ 1 ղրուշ ունի. ամէնը քանի՞ ղրուշ ունի։

Կարապետ 5 ղրուշնոց մը եւ 2 հատ 2 ղրուշնոց ունի. քանի՞ ղրուշ ունի։

Մարտիկ 9 ղրուշ ունի. 5 ղրուշի կեռաս կը գնէ. քանի՞ ղրուշ կը մնայ քովը։

9 ղրուշը քանի՞ հատ 2 ղրուշնոց կ՚ընէ. քանի՞ հատ 5 ղրուշնոց եւ 2 ղրուշնոց կ՚ընէ։

1 տետրակը 3 ղրուշ կ՚արժէ. ի՞նչ կ՚արժէ 3 տետրակը։ — 9 ղրուշով քանի՞ տետրակ կրնանք գնել։

Եթէ մէկ պատկերը 1 ղրուշ արժէ, ի՞նչ կ՚արժէ 9 պատկերը։

Եթէ մէկ պատկերը 1 ղրուշ արժէ, 9 ղրուշով քանի՞ պատկեր կրնանք գնել։

9էն հանեցէք 2 անգամ 3, — 2 անգամ 4, — 3 անգամ 2, — 8 անգամ 1. ի՞նչ կը մնայ։

Մէկ օխա խնձորը 2 ղրուշ կ՚արժէ. քանի՞ օխա կրնանք գնել 9 ղրուշով։

Մէկ օխա տանձը 4 ղրուշ կ՚արժէ. ո՞րչափ տանձ կրնանք գնել 9 ղրուշով։

Քանի՞ կ՚ընէ 3 անգամ 3. — 2 անգամ 4, աւելի 1. — 3 անգամ 2, աւելի 3։

Սաատուր իր հօրմէն 9 ղրուշ առաւ. 3ական ղրուշնոց 2 թաշկինակ, 2 ղրուշնոց կաղամար մը եւ 1 ղրուշնոց տետրակ մը պիտի գնէ. բաւական դը-րամ ունի՞։

Բիւզանդ 3 անգամ աւելի տարիք ունի իր եղ-բօրմէն որ 3 տարեկան է. քանի՞ տարեկան է Բիւ-զանդ։

Քանի՞ հատ 2 ղրուշնոց եւ 1 ղրուշ կ՚ընեն 9 ղրուշ։

1 կաղամարը 1 ղրուշ կ՚արժէ. քանի՞ ղրուշ կ՚արժէ 9 կաղամարը։

Մարտիրոս 9 ղրուշ ունի. 4ական ղրուշնոց 2 գիրք պիտի գնէ. իրեն քով քանի՞ ղրուշ պիտի մնայ։

Մարիամ 9 ծաղիկ ունի. երրորդ մասն իր Սա-թենիկ քրոջը կու տայ. իրեն քով քանի՞ ծաղիկ կը մնայ, եւ քանի՞ ծաղիկ ունի Սաթենիկ։

6 ծրար ասեղը 9 ղրուշ կ՚արժէ. ի՞նչ կ՚արժէ 3 ծրարը։

1+1+1+1+1+1+1+1+1= . . .   9×1= . . . ։
9—1—1—1—1—1—1—1—1= . . .   9—8= . . . ։
2+2+2+2+1= . . .   4×2+1= . . . ։
9—2—2—2—2= . . .   9—3—3= . . . ։
3+3+3= . . .   3×3= . . . ։   9—4×2= . . . ։
4+4+1= . . .   2×4+1= . . . ։
5+4= . . .   4+5= . . .   1×5+4= . . . ։
9—5= . . .   9—4= . . .   9—3= . . . ։   9—1= . . . ։
6+3= . . .   3+6= . . .   1×3+6= . . . ։

$7+2=\dots$ $2+7=\dots$ $1\times7+2=\dots$։
$9-7=\dots$ $9-6=\dots$ $9-2=\dots$։
$8+1=\dots$ $1+8=\dots$ $1\times6+3=\dots$։

9էն քանի՞ հանեմ նէ, 8 կ'ունենամ։
9էն » » , 7 »
9էն » » , 6 »
9էն » » , 5 »
9էն » » , 4 »
9էն » » , 3 »
9էն » » , 2 »
9էն » » , 1 »

8ին վրայ 1 աւելցնեմ նէ՝ քանի՞ կ'ունենամ։
7ին » 2 » » » »
6ին » 3 » » » »
5ին » 4 » » » »
4ին » 5 » » » »
3ին » 6 » » » »
2ին » 7 » » » »
1ին » 8 » » » »

Քանի՞ կ'ընէ $1\times1+8$, $2\times1+7$, $3\times1+6$։
Քանի՞ կ'ընէ $4\times1+5$, $5\times1+4$, $6\times1+3$։
Քանի՞ կ'ընէ $7\times1+2$, $8\times1+1$, $9\times1+0$։
Քանի՞ կը մնայ, երբ 9էն $1\times1$, $2\times1$, $3\times1$ հանենք։
Քանի՞ կը մնայ, երբ 9էն $4\times1$, $5\times1$, $6\times1$ հանենք։
Քանի՞ կը մնայ, երբ 9էն $7\times1$, $8\times1$, $9\times1$ հանենք։
Քանի՞ կ'ընէ $1\times2+1$, $2\times2+1$, $3\times2+1$, $4\times2+1$։
Քանի՞ կը մնայ, երբ 9էն $1\times2$, $2\times2$, $3\times2$, $4\times2$ հանենք։
Քանի՞ կ'ընէ $1\times3+3$, $2\times3+3$, $3\times3$, $3\times1+1\times6$։
Քանի՞ կը մնայ, երբ 9էն $1\times5$, $2\times3$, $3\times3$ հանենք։

Քանի՞ կ'ընէ $1\times4+1$, $2\times4+1$։
Քանի՞ կ'ընէ $9-1\times4$, $9-2\times4$։
Քանի՞ կ'ընէ $5\times1+4\times1$, $6\times1+1\times3$։
Քանի՞ կը մնայ, երբ $3\times3$էն հանենք $1\times5$. $1\times6$։
Քանի՞ կ'ընէ 7 անգամ $1+1$ անգամ 2։
Քանի՞ կը մնայ, երբ $3\times3$ էն հանենք $1\times3$. $1\times7$։
9ին մէջ 1, 3, 9 թիւերը քանի՞ անգամ կան։
3ին եռապատիկն ի՞նչ է։ — 9 ո՞ր թուոյն եռապատիկն է։



## ՏԱՍԸ

Հեռագրական թելին վրայ շատ մը ծիծեռնակներ կան։ Համրենք այս ծիծեռնակներն.



Մէկ, երկու, երեք, չորս, հինգ, վեց, եօթը, ութ, ինը ծիծեռնակ։



Հիմա, եթէ ինը ծիծեռնակներուն քով ուրիշ մըն ալ գայ կենայ, քանի՞ ծիծեռնակ պիտի ըլլայ ամէնը։

Իննին վրայ մէկ աւելցնելով, կ'ունենանք տասը։

* * * * * * * * *   *

9 հաց ունէինք. 1 հաց ալ առինք. ունեցանք տասը հաց։

Տասը թիւը կը գրուի այսպէս. 10, այսինքն 1 մը, եւ քովը 0 մը։

5՝ 5 ալ կ'ընէ տասը. * * * * *   * * * * * 10

4՝ 6 ալ կ'ընէ տասը. * * * *   * * * * * * 10

Քանի՞ անգամ 2՝ կ'ընէ տասը. * * * * * * * * * * 10

Տասն է 9, աւելի՞. * * * * * * * * *   * 9+1

Տասն է 8, աւելի՞։ — Տասն է 6, աւելի՞։

Տասնին մէջ քանի՞ անգամ 1 կայ. — քանի՞ անգամ 2 կայ. — քանի՞ անգամ 4 կայ. — քանի՞ անգամ 3 կայ. — քանի՞ անգամ 5 կայ։

---

Արուսեակ 5 հատ 2 ղրուշնոց ունի. Սրբուհի 2 հատ 5 ղրուշնոց ունի, եւ Պօղոս 10 ղրուշնոց մ'ունի։ Ո՞վ ամենէն աւելի դրամ ունի [1]։

---

[1] Այս խնդիրները բերանացի պիտի լուծէ տղան. ակ իւրաքանչիւր խնդրոյ մէջ գտնուած թուանշաննե-ը մի եւ նոյն ժամանակ գրելու է գրատախտակին կամ էրաքարին վրայ։

Պօղոս իր 10 ղրուշնոցովը 5 ղրուշի կեռաս պիտի գնէ . քանի՞ ղրուշ ետ առնելու է ։

Համբորդութիւն մ՚ըրի . 5 օր օդը գեղեցիկ եղաւ եւ 5 օր գէշ . ո՞րչափ տեւեց այս համբորդութիւնը ։

Քանի՞ հատ 5 ղրուշնոց 10 ղրուշ կ՚ընէ ։

Քանի՞ օխա տանձ կրնանք գնել 10 ղրուշով , եթէ մէկ օխան 2 ղրուշ արժէ ։

Տասնին կէսը քանի՞ է ։

Ամէն մէկ ձեռքիս մէջ 5 փարա ունիմ . ամէնը քանի՞ փարա ունիմ ։

Յարութիւն 5 տարու է . եղբայրը երկու անգամ աւելի տարիք ունի . եղբայրը քանի՞ տարու է ։

Գրիգոր 10 կաղին ունի . կ՚ուզէ երկու հաւասար մասի բաժնել . ամէն մէկ մասին մէջ քանի՞ կաղին պիտի գտնուի ։

Մայր մը 5 շապիկ շինել կ՚ուզէ . 1 շապիկի համար 2 կանգուն կտաւ պէտք է . ո՞րչափ կտաւ գնելու է ։

Հայր մը 10 խնձոր ունի . իր 4 տղաքներէն մէկուն 4 խնձոր կուտայ . մնացած խնձորները միւս երեք տղոց մէջ հաւասար թուով կը բաժնէ . ամէն մէկ տղայ քանի՞ խնձոր կ՚առնէ ։

10 հատուած սորվելու համար քանի՞ օր պէտք է , եթէ օրը 2 հատուած միայն կարելի է սորվիլ ։

Համբարձում 10 տարեկան է . իր Աղաւնի քոյրը 5 անգամ քիչ տարիք ունի . Աղաւնի քանի՞ տարեկան է ։

*Մէկ մատիտը 10 փարա կ'արժէ․ 1 թերթ թուղթը անոր կէսին չափ կ'արժէ․ քանի՞ կ'արժէ թերթ մը թուղթը։*

*Երկուշաբթի օր 1 ղրուշ ծախսեցի, երեքշաբթի՝ 2 ղրուշ, չորեքշաբթի՝ 3 ղրուշ, հինգշաբթի՝ 4 ղրուշ․ չորս օրուան մէջ քանի՞ ղրուշ ծախսեցի։ Քովս 2 հատ 5 ղրուշնոց ունէի․ քանի՞ ղրուշ աւելցաւ։*

1+1+1+1+1+1+1+1+1+1=....։ 10×1=....։
10—1—1—1—1—1—1—1—1—1=... 10—9×1=....։
2+2+2+2+2=... 5×2=....։
3+3+3+1=... 3×3+1=....։ 1×9+1=....։
10—3—3—3=....։ 8+2=....։
4+4+2=... 2×4+2=... 10—4—4=....։
5+5=... 2×5=... 10—5=... 10—3=....։
10—2—2—2—2=....։ 10—4×2=....։
10—3—3—3=....։ 10—3×3=....։
6+4=... 4+6=... 1×6+4=... 10—6=....։
7+3=... 3+7=... 1×7+3=... 10—4=....։
8+2=... 2+8=... 1×8+2=... 10—8=....։
9+1=... 1+9=... 10—1=... 10—9=....։

---

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 9ին | վրայ | քանի՞ | աւելցնեմ | նէ՝ | 10 | կ'ունենամ։ |
| 8ին | » | » | » | » | 10 | » |
| 7ին | » | » | » | » | 10 | » |
| 6ին | » | » | » | » | 10 | » |
| 5ին | » | » | » | » | 10 | » |
| 4ին | » | » | » | » | 10 | » |
| 3ին | » | » | » | » | 10 | » |
| 2ին | » | » | » | » | 10 | » |
| 1ին | » | » | » | » | 10 | » |

10էն քանի՞ հանեմ նէ՝ 9 կ'ունենամ։
10էն » » » 8 »
10էն » » » 7 »
10էն » » » 6 »
10էն » » » 5 »
10էն » » » 4 »
10էն » » » 3 »
10էն » » » 2 »
10էն » » » 1 »

Քանի՞ կ'ընէ 1+9, 2+8, 3+7, 4+6, 5+5։
Քանի՞ կ'ընէ 6+4, 7+3, 8+2, 9+1, 10+0։
Քանի՞ կը մնայ, երբ 10էն 1, 2, 3, 4... 9 հանենք։
Քանի՞ կ'ընէ 1×1+9, 2×1+8, 3×1+7, 4×1+6։
Քանի՞ կ'ընէ 5×1+5, 6×1+4, 7×1+3, 8×1+2։
Քանի՞ կը մնայ, երբ 10էն 1×1, 2×1, 3×1 հանենք։
Քանի՞ կը մնայ, երբ 10էն 4×1, 5×1, 6×1 հանենք։
Քանի՞ կը մնայ, երբ 10էն 7×1, 8×1, 9×1 հանենք։
Քանի՞ կ'ընէ 1×3+1, 2×3+1, 3×3+1։
Քանի՞ կ'ընէ 10—1×3, 10—2×3, 10—3×3։
Քանի՞ կ'ընէ 1×4+2, 2×4+2։
Քանի՞ կ'ընէ 10—1×4, 10—2×4։
Քանի՞ կ'ընէ 10—1×5, 10—2×5։
Քանի՞ կ'ընէ 1×6 էվել 2×2, 2×5 պակաս 2×3, 2×4+2×1, 2×5—2×4. 3×3+1×1։
Քանի՞ կ'ընէ 2×5—3×3, 2×5—1×7։

1, 2, 5 թիւերը 10ին մէջ քանի՞ անգամ կը պարունակուին։

Ի՞նչ է 1ին տասնապատիկը, 2ին հնգապատիկը, 5ին կրկինը։

Ի՞նչ է 10ին կէսը, 10ին հինգերորդ մասը, 10ին տասներորդ մասը։

7ին մէջ քանի՞ անգամ 3 կայ, քանի՞ անգամ 2 կայ, քանի՞ անգամ 4 կայ, քանի՞ անգամ 1 կայ, քանի՞ անգամ 5 կայ, քանի՞ անգամ 6 կայ. — Ի՞նչ կը մնայ։

Երկու համբորդութիւն ըրի. մէկը 3 օր տեւեց, միւսը 5 օր. քանի՞ օր համբորդեցի։

8ին մէջ քանի՞ անգամ 4 կայ, քանի՞ անգամ 2 կայ, քանի՞ անգամ 3 կայ, քանի՞ անգամ 5 կայ. — Ի՞նչ կը մնայ։

8 ունենալու համար քանի՞ աւելցնելու է 5ին վրայ, 4ին վրայ, 6ին վրայ, 3ին վրայ, 1ին վրայ, 7ին վրայ։

9 ունենալու համար ի՞նչ աւելցնելու է 3ին վրայ, 6ին վրայ, 2ին վրայ, 8ին վրայ, 7ին վրայ, 4ին վրայ, 5ին վրայ, 1ին վրայ։

4ին մէջ քանի՞ անգամ 3 կայ. — Ի՞նչ կը մնայ։

4ին կէսին վրայ քանի՞ աւելցնեմ նէ՝ 4 կ'ունենամ։

9 ունենալու համար ի՞նչ աւելցնելու է 2 անգամ 2ին վրայ, 3 անգամ 2ին վրայ, 4 անգամ 2ին վրայ։

---

1էն մինչեւ 10ը համրեցէք. 5էն առաջ ի՞նչ կուգայ։

10էն մինչեւ 1 համրեցէք. 5էն առաջ ի՞նչ կուգայ։

Ցէն առաջ ի՞նչ կուգայ, երբ 1էն մինչեւ 10 համրենք։

Ցէն առաջ ի՞նչ կուգայ, երբ 10էն մինչեւ 1 ետ երթանք։

Դուք այդ գրատախտակին վրայ 10 տղայ էք. թող վեր ելնէ երրորդը, վեցերորդը, իններորդը։

Առաջին երկուքը թող ելնեն. նոյնպէս վերջինը. վերջին երեքը, վերջին հինգը։

Ցակոբ, 2 առ 2 զոյգ թիւերը համրէ. երկու, չորս, վեց . . . տասը։

Երուանդ, 2 առ 2 անզոյգ թիւերը համրէ. մէկ, երեք . . . տասը։

Խաչիկ, 1էն սկսեալ 4 առ 4 համրէ. նոյնպէս 2էն սկսեալ։

Հիմա 10էն մինչեւ 1 ետ դառնանք՝ 2 առ 2 համրելով. տասը, ութ . . . զէրօ։

Դարձեալ 10էն մինչեւ 1 ետ դառնանք՝ անզոյգ թիւերը համրելով. ինը, եօթը . . . մէկ։

Ամէն մէկդ վերցուցէք երկու մատ, ութ մատ, երեք մատ, տասը մատ, ինը մատ, հինգ մատ։

Քանի՞ կ՚ընէ 10 բարի նիշին կէսը. քանի՞ կ՚ընէ քառորդը։



## ՏԱՍՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՔՍԱՆ

| | | | |
|---|---|---|---|
| 10+ * | = *տասն եւ մէկ, որ կը գրուի* | | **11** |
| 10+ * * | = *տասն եւ երկու,* | » | **12** |
| 10+ * * * | = *տասն եւ երեք,* | » | **13** |
| 10+ * * * * | = *տասն եւ չորս,* | » | **14** |
| 10+ * * * * * | = *տասն եւ հինգ,* | » | **15** |
| 10+ * * * * * * | = *տասն եւ վեց,* | » | **16** |
| 10+ * * * * * * * | = *տասն եւ եօթն,* | » | **17** |
| 10+ * * * * * * * * | = *տասն եւ ութ,* | » | **18** |
| 10+ * * * * * * * * * | = *տասն եւ ինը,* | » | **19** |
| 10+ * * * * * * * * * * | = *քսան,* | » | **20** |

**1. 12. 13. 14. 15. 16. 17. 18. 19. 20.**

*Քանի՞ կ'ընէ* 10+7...  10+9...  10+3...։

| | |
|---|---|
| 10+4=14 | 10+ 3= |
| 10+8= | 10+ 5= |
| 10+9= | 10+ 8= |
| 10+2= | 10+ 4= |
| 10+6= | 10+10= |

*Ի՞նչ մասերէ կը բաղկանայ* 17 (10+7)․ 19․ 13։

| | |
|---|---|
| 15=10+5 | 19= + |
| 18= + | 14= + |
| 12= + | 20= + |
| 16= + | 17= + |
| 13= + | 15= + |

*Քանի՞ կ՚ընէ երկու անգամ տասը։*

---

4+3 *կ՚ընէ* 7։ *Ուրեմն* 14+3 *կ՚ընէ* 17։

*Քանի՞ կ՚ընէ* 15+3 (10+5+3)=10+8=18

13+6 (10+3+6)=10+9=19

*Հետեւեալ հաշիւներն ալ ըրէ՛ք․*

| | | |
|---|---|---|
| 3+2=5 | 7+3= | 3+3= |
| 13+2= | 17+3= | 13+3= |
| 5+4= | 5+5= | 4+4= |
| 15+4= | 15+5= | 14+4= |
| 6+2= | 6+3= | 2+6= |
| 16+2= | 16+3= | 12+6= |
| 1+7= | 2+5= | 3+4= |
| 11+7= | 12+5= | 13+4= |
| 2+8= | 4+5= | 5+3= |
| 12+8= | 14+5= | 15+3= |
| 9+1= | 1+6= | 4+6= |
| 19+1= | 11+6= | 14+6= |

---

4էն եթէ 2 հանէ՛ք, կը մնայ 2։

14էն 2 հանեցէ՛ք, պիտի մնայ 12։

Ինչու որ, 14 կը նշանակէ 10 եւ ❋❋ ❋❋

Եթէ այս կէտերէն երկուքը ջնջեմ, կը մնայ 10+ ❋❋ կամ 12։

16էն 3 հանեցէ՛ք, պիտի մնայ...

Գրաւոր կատարեցէ՛ք հետեւեալ հաշիւները.

| | | |
|---|---|---|
| 4—2=2 | 5—2= | 7—3= |
| 14—2= | 15—2= | 17—3= |
| 6—2= | 9—6= | 9—5= |
| 16—2= | 19—6= | 19—5= |
| 8—2= | 8—6= | 8—4= |
| 18—2= | 18—6= | 18—4= |
| 6—3= | 9—3= | 8—8= |
| 16—3= | 19—3= | 18—8= |
| 7—2= | 8—5= | 7—5= |
| 17—2= | 18—5= | 17—5= |
| 10—4= | 3—2= | 10—9= |
| 20—4= | 13—2= | 20—9= |

Ի՞նչ է 7։

7 է ❋❋❋ ❋❋❋ ❋ կամ 6+1

❋❋❋ ❋❋ ❋❋ կամ 5+2

❋❋ ❋❋ ❋❋❋ կամ 4+3

Կամ թէ, 7 է 3+4... 2+5... 1+6... 4+°... 5+°. 6+°։

9 է 8+1. 6+3. 5+°. 4+°. 3+°. 2+°. 1+°։

Քանի՞ կ՚ընէ 9+7։

9ին վրայ նախ 1, յետոյ 6 կ՚աւելցնենք, կ՚ունենանք 9+7=9+1+6=10+6=16։

Քանի՞ կ՚ընէ 8+6։

* * * *   * * * *   8 թուոյն վրայ

Աւելցուցէ՛ք   * * * * * * } 6 թիւը

Կ՚ըլլայ * * * *   * * * *   * * * * * * } 14

| | | |
|---|---|---|
| 7+9 | կամ | 10+6 |
| 7+5 | . . . | 10+՞ |
| 7+8 | . . . | 10+՞ |
| 8+6 | . . . | 10+՞ |
| 8+9 | . . . | 10+՞ |
| 8+5 | . . . | 10+՞ |

| | | |
|---|---|---|
| 8+9=17 | 9+5= | 3+9= |
| 8+7= | 8+5= | 4+8= |
| 9+6= | 7+5= | 6+7= |
| 9+4= | 9+8= | 5+8= |
| 6+9= | 9+7= | 7+7= |
| 6+7= | 9+9= | 8+8= |

Քանի՞ կ՚ընէ 13—7։ Նախ հանեցէք 3, յետոյ մնացած 4ը, այսպէս․ 13—3=10․ 10—4=6։

Քանի՞ կ՚ընէ 16—9։ Նախ հանեցէ՛ք 6, յետոյ 3, այսպէս․ 16—6=10․ 10—3=7։

| | | |
|---|---|---|
| 14—6= | 15—9= | 11—7= |
| 16—9= | 12—9= | 11—5= |
| 16—7= | 14—9= | 13—6= |
| 15—8= | 11—6= | 17—8= |
| 14—8= | 16—8= | 18—9= |
| 16—8= | 12—4= | 12—6= |

---

Մկրտիչ 10 ղրուշնոց մը եւ 1 ղրուշ ունի. Մանուկ 5 հատ 2 ղրուշնոց ունի. ո՞վ աւելի ունի։

Մանուկ 11 ղրուշ ունի. 5 ղրուշի պիտակ կը գնէ. քանի՞ ղրուշ կը մնայ քովը։

Ի՞նչ կ'արժէ 12 պատկերը, եթէ 1 պատկերը 1 ղրուշ արժէ։

Ի՞նչ կ'արժէ 6 թաշկինակը, եթէ 1 թաշկինակը 2 ղրուշ արժէ։

Ի՞նչ կ'արժէ 4 տետրակը, եթէ 1 տետրակը 3 ղրուշ արժէ։

Ի՞նչ կ'արժէ 3 գիրքը, եթէ 1 գիրքը 4 ղրուշ արժէ։

12 կանգուն կտաւով քանի՞ շապիկ կը շինուի, եթէ 1 շապիկի համար 3 կանգուն պէտք ըլլայ։

Խաչիկ 6 տարեկան է. իր քոյրն իրեն կրկին տարիքն ունի. քոյրը քանի՞ տարեկան է,

Օննիկ 12 տող դաս գոց բռաւ. Ադամ այս թըւոյն կէսին չափ բռաւ. քանի՞ տող գոց բռաւ Ադամ։

Պետրոս 12 ղրուշ ունէր. 3 ղրուշը կորսնցուց. քովը քանի՞ ղրուշ մնաց։ — 4 ղրուշը կորսնցուց. քովը ո՞րչափ մնաց։

Բիւզանդ 12 խնձոր ունի. 4ը իր քրոջը կուտայ. քանի՞ խնձոր կը մնայ քովը։

Եթէ 3 մատիտը 1 ղրուշ արժէ, ի՞նչ կ'արժէ 2 մատիտը։

3 կարգի վրայ շիշեր գրուած են. ամէն մէկ

կարգին մէջ 4 շիշ կայ. քանի՞ շիշ կայ ամէնը։



4 շիշ սայլին մէջ կայ, 4 շիշ մէկ տղուն ձեռքը, 4 շիշ ալ միւս տղուն ձեռքը. ամէնը քանի՞ շիշ կ'ընէ։



Չորս գրիչը 1 ղրուշ կ'արժէ. ի՞նչ կ'արժէ 12 գրիչը։

Կէս տարին քանի՞ ամիս կ'ընէ. 1 երրորդ, 2 երրորդ, 1 քառորդ, 2 քառորդ, 3 քառորդ տարին քանի՞ ամիս կ'ընէ, գիտնալով որ 1 տարին 12 ամիս է։

Համբարձում ամէն ամիս տետրակ մը կը գործածէ. տարին քանի՞ տետրակ կ'ընէ։

Մարիամ 12 գուլպայ պիտի հիւսէ. 1 զոյգ գուլպային համար 1 կծիկ բամպակ պէտք է. ամէնը քանի՞ կծիկ պէտք է։

Յակոբ 12 ընկոյզ ունի. երրորդ մասն իր քրոջը կուտայ. քառորդն իր եղբօրը. վեցերորդ մասն ինք կ'ուտէ. տասներկուերորդ մասը կը կորսնցունէ. քանի՞ ընկոյզ կը մնայ քովը։

13 ղրուշով 2 ղրուշնոց քանի՞ տետրակ կրնանք գնել։

Սարգիս 13 ընկոյզը քանի՞ մասի բաժնելու է որ ամէն մէկ մասին մէջ 4ական ընկոյզ գտնուի. — 3ական ընկոյզ գտնուի. — 6ական ընկոյզ գըտնուի. — 5ական ընկոյզ գտնուի։ — Քանի՞ ընկոյզ կ'աւելնայ։

3 կտոր դրամով ի՞նչպէս կրնանք 13 ղրուշ վճարել։

Յովհաննէս ամէն օր 2 տանձ կ'ընդունի. շաբաթը քանի՞ տանձ կ'ընէ։

Ի՞նչպէս կրնանք 14 ղրուշը 3 կտոր դրամով վճարել։

Յարութիւն ամէն օր երես մը գիր կը գրէ. 2 շաբաթը քանի՞ երես կը գրէ։

Դպրոցի մը մէջ 5 դասարան կայ՝ ամէն մէկը 3 պատուհանով. բոլորը քանի՞ պատուհան կայ։

Ի՞նչպէս կրնանք 15 ղրուշը երկու կտոր դրամով վճարել։

Մագթաղինէ 15 ընկոյզ ունի. երրորդ մասն իր քրոջը կուտայ, հինգերորդ մասը կ'ուտէ եւ տասնհինգերորդ մասը կը կորսնցունէ. դեռ քանի՞ ընկոյզ ունի։

Ահա 3 պատուհան, որոց իւրաքանչիւրն ունի 6 ապակի։ Բոլորը քանի՞ ապակի կայ 3 պատուհաններուն մէջ։



Կրնա՞ք 16 տանձը 2, 4, 8 հաւասար մասերու բաժնել։

Պօղոս եւ Պետրոս իրենց մէջ 16 գրիչ պիտի բաժնեն. Պօղոս մէկ քառորդը պիտի առնէ. մնացածն ալ Պետրոս պիտի առնէ. քանի՞կան գրիչ պիտի առնեն։

Սարգիս 3 ժամու մէջ 15 խնդիր լուծել կ'ուզէ. 1 ժամու մէջ քանի՞ խնդիր լուծելու է։

3 հատ 5 ղրուշնոց և 1 ղրուշ քանի՞ ղրուշ կ'ընէ ։

Մկրտիչ 16 ղրուշ ունի . կէսն աղքատ տղու մը կուտայ . քառորդովը գիրք մը կը գնէ, եւ ութե- րորդ մասովը տետրակ մը . քանի՞ ղրուշ կը մնայ իրեն ։

Ադամ 17 ղրուշի կարկանդակ գնել կ'ուզէ . 1 կարկանդակը 3 ղրուշ կ'արժէ ։ Քանի՞ հատ կրնայ գնել ։

Մարկոս 6 պատկեր ունի . ամէն մէկը 3 ղրուշ կ'արժէ . բոլորը քանի՞ ղրուշ կ'արժէ ։

Եթէ 18 ղրուշով 9 կաղամար գնենք, 1 կաղա- մարը քանի՞ ղրուշ արժած կ'ըլլայ ։

Քանի՞ կծիկ բուրդ պէտք է 18 գուլպայի հա- մար, եթէ 1 գուլպայի համար 1 կծիկ պէտք ըլլայ ։

Մելքոն 18 ընկոյզ ունի . կ'ուզէ 2 կարգի վրայ շարել . ամէն մէկ կարգի վրայ քանի՞ ընկոյզ դնե- լու է ։ — Եթէ 3, 6, 9 կարգերու վրայ շարէ, քանի՞ ընկոյզ դնելու է ամէն մէկ կարգի վրայ ։

Հայր մը 18 սալոր կը բաժնէ իր 3 որդւոց . Սարգիս վեցերորդ մասը կ'ընդունի, Մարկոս անոր երկու անգամը, եւ Զարուհի մնացածը . ամէն մէկը քանի՞ սալոր ունի ։

18 ղրուշ ընդունեցի գլխարկիս համար, կ'ըսէ Յովսէփ, եւ ես, կը պատասխանէ Անտոն, քու ու- նեցածիդ երրորդ մասին 2 անգամն ունիմ ։ Քանի՞ ղրուշ ունի Անտոն ։



## ՔՍԱՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԵՐԵՍՈՒՆ

| | |
|---|---|
| Քսան եւ մէկ, | 21 |
| Քսան երկու, | 22 |
| Քսան երեք, | 23 |
| Քսան եւ չորս, | 24 |
| Քսան եւ հինգ, | 25 |
| Քսան եւ վեց, | 26 |
| Քսան եւ եօթն, | 27 |
| Քսան եւ ութ, | 28 |
| Քսան եւ ինն, | 29 |
| Երեսուն, | 30 |

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1.** Կարդացէք հետեւեալ թիւերը.

23, 21, 27, 25, 20, 29, 22, 28, 23, 26։
18, 17, 15, 19, 11, 13, 10, 12, 14, 16։

**2.** Թուանշաններով գրեցէք հետեւեալ թիւերը.

| | | |
|---|---|---|
| Տասն եւ եօթը | Քսան եւ մէկ | Քսան եւ հինգ |
| Տասն եւ մէկ | Քսան | Քսան եւ չորս |
| Քսան եւ ինը | Տասն եւ հինգ | Քսան եւ վեց |
| Տասն եւ ինը | Քսան եւ ութ | Վեց |
| Տասն եւ վեց | Քսան եւ եօթն | Քսան եւ երկու |

## ՊԱՐԶ ՀԱՇԻՒՆԵՐ

**1**. Համրեցէք սա կէտերը. քանի՞ կարգի վրայ շարուած են անոնք. ամէն մէկ կարգի մէջ քանի՞ կէտ կայ։

* * * * * * * * * *

* * * * * * * * * *

* * * * * * * * * *

**2**. Գիտնալով որ 2 եւ 2 կ'ընէ 4, քանի՞ կ'ընէ
12 եւ 2 22 եւ 2

**3**. Գիտնալով որ 3 եւ 3 կ'ընէ 6, քանի՞ կ'ընէ
13 եւ 3 23 եւ 3

**4**. Քանի որ 4 եւ 4 կ'ընէ 8, քանի՞ կ'ընէ
14 եւ 4 24 եւ 4

**5**. Յակոբ 12 գնդասեղ ունէր. 2 հատ ալ տըւին իրեն. հիմա քանի՞ գնդասեղ ունի։

**6**. Գործաւոր տղայ մը օրը 3 ղրուշ կը շահի. 10 օրուան մէջ ո՞րչափ կը շահի։

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ**. — Յական համրել.

| | | |
|---|---|---|
| 3 եւ 3... 6 | եւ 3... 15 | եւ 3... 24 |
| եւ 3... 9 | եւ 3... 18 | եւ 3... 27 |
| եւ 3... 12 | եւ 3... 21 | եւ 3... 30 |

## ԵՐԵՍՈՒՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՔԱՌԱՍՈՒՆ

*Շարունակենք համրել երեսունէն անդին.*

*Երեսուն եւ մէկ,* **31**
*Երեսուն երկու,* **32**
*Երեսուն երեք,* **33**
*Երեսուն եւ չորս,* **34**
*Երեսուն եւ հինգ,* **35**
*Երեսուն եւ վեց,* **36**
*Երեսուն եւ եօթն,* **37**
*Երեսուն եւ ութ,* **38**
*Երեսուն եւ ինը,* **39**
*Քառասուն,* **40**

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1.** *Կարդացէ՛ք հետեւեալ թիւերը.*

23, 27, 34, 40, 39, 26, 29, 30, 28, 36, 31։
20, 29, 16, 22, 19, 33, 25, 17, 32, 35, 21։

**2.** *Թուանշաններով գրեցէ՛ք հետեւեալ թիւերը.*

| | | |
|---|---|---|
| *Տասն եւ հինգ* | *Տասն եւ ութ* | *Երեսուն եւ վեց* |
| *Քառասուն* | *Քսան եւ հինգ* | *Երեսուն եւ եօթն* |
| *Քսան եւ վեց* | *Քսան եւ եօթն* | *Երեսուն* |
| *Երեսուն երեք* | *Տասն եւ ինը* | *Տասն եւ եօթն* |
| *Երեսուն եւ ինը* | *Քսան եւ ութ* | *Քսան երեք* |

## ՓՈՐՁ ՀԱՐՑՈՒՄՆԵՐ

**1.** Համրեցէք սա կէտերը. քանի՞ կարգի վրայ շարուած են անոնք. ամէն մէկ կարգի մէջ քանի՞ կէտ կայ։

* * * * * * * * * *

* * * * * * * * * *

* * * * * * * * * *

* * * * * * * * * *

**2.** Մինչեւ 40 համրեցէք 2ական կանգուն, — 3ական ղրուշ, — 4ական օխա։

**3.** Գիտնալով որ 4 եւ 5 կ'ընէ 9, քանի՞ կ'ընէ
24 եւ 5 34 եւ 5 14 եւ 5

**4.** Քանի՞ սալոր կ'ընէ 20 սալոր եւ 1 սալոր, 20 սալոր եւ 2 սալոր, 20 սալոր եւ 3 սալոր, 20 սալոր եւ 4 սալոր։

**5.** Քանի՞ կեռաս կ'ընէ 2 անգամ 10 կեռաս, — 3 անգամ 10 կեռաս, — 1 անգամ 10 կեռաս, — 4 անգամ 10 կեռաս։

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ. — 4ական համրել.

| | | |
|---|---|---|
| 4 եւ 4... 8 | 4 ալ... 20 | 4 ալ... 32 |
| եւ 4... 12 | 4 ալ... 24 | 4 ալ... 36 |
| եւ 4... 16 | 4 ալ... 28 | 4 ալ... 40 |

---

## ՔԱՌԱՍՈՒՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՅԻՍՈՒՆ

Համրենք հիմա քառասուն եւ մէկէն մինչեւ յիսուն։

| | |
|---|---|
| Քառասուն եւ մէկ, | 41 |
| Քառասուն երկու, | 42 |
| Քառասուն երեք, | 43 |
| Քառասուն եւ չորս, | 44 |
| Քառասուն եւ հինգ, | 45 |
| Քառասուն եւ վեց, | 46 |
| Քառասուն եւ եօթն, | 47 |
| Քառասուն եւ ութ, | 48 |
| Քառասուն եւ ինը, | 49 |
| Յիսուն, | 50 |

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1.** Կարդացէք հետեւեալ թիւերը.

37, 41, 49, 43, 48, 49, 50, 46, 40, 20, 45։
30, 44, 37, 42, 47, 36, 29, 18, 39, 22, 24։

**2.** Թուանշաններով գրեցէք հետեւեալ թիւերը.

Քառասուն եւ մէկ
Քառասուն երեք
Քառասուն եւ ութ
Յիսուն
Քառասուն երկու
Քսան

Քառասուն եւ ինն
Քառասուն եւ հինգ
Քառասուն եւ չորս
Քառասուն եւ եօթն
Երեսուն
Տասն եւ վեց

## ՊԱՐԶ ՀԱՇԻՒՆԵՐ

**1.** *Համրեցէ՛ք սա կէտերը. քանի՞ կարգի վրայ շարուած են անոնք. ամէն մէկ կարգի մէջ քանի՞ կէտ կայ։*

✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹
✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹
✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹
✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹
✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹ ✹

**2.** *Մինչեւ* 50 *համրեցէք* 5*ական օխա, սկսելով* 5*էն։*

**3.** *Գիտնալով որ* 5 *եւ* 5 *կ՚ընէ* 10, *քանի՞ կ՚ընէ* 15 *եւ* 5. 25 *եւ* 5 45 *եւ* 5. 35 *եւ* 5։

**4.** *Գիտնալով որ* 6 *եւ* 6 *կ՚ընէ* 12, *քանի՞ կ՚ընէ* 16 *եւ* 6. 26 *եւ* 6. 36 *եւ* 6։

**5.** *Համրեցէք* 10 *առ* 10 *մինչեւ* 50։

**6.** *Հակադարձը հաշուեցէք* 10 *առ* 10, *սկսելով* 50*էն։*

**7.** *Պօղոս* 5 *մատիտ ծախեց՝ հատը* 10 *փարայով. քանի՞ փարա առաւ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ.** — 5*ական հանել.*

| | | |
|---|---|---|
| 5 *եւ* 5 *կ՚ընէ* 10 | 5 *ալ կ՚ընէ* 25 | 5 *ալ կ՚ընէ* 40 |
| *եւ* 5 . . . 15 | 5 *ալ* . . . 30 | 5 *ալ* . . . 45 |
| *եւ* 5 . . . 20 | 5 *ալ* . . . 35 | 5 *ալ* . . . 50 |

## ՅԻՍՈՒՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՎԱԹՍՈՒՆ

| | |
|---|---|
| *Յիսուն եւ մէկ,* | 51 |
| *Յիսուն երկու,* | 52 |
| *Յիսուն երեք,* | 53 |
| *Յիսուն եւ չորս* | 54 |
| *Յիսուն եւ հինգ,* | 55 |
| *Յիսուն եւ վեց,* | 56 |
| *Յիսուն եւ եօթն,* | 57 |
| *Յիսուն եւ ութ,* | 58 |
| *Յիսուն եւ ինը,* | 59 |

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1.** *Կարդացէք հետեւեալ թիւերը.*

53, 51, 57, 55, 59, 50, 58, 56, 52, 49, 17։
30, 40, 60, 47, 31, 16, 37, 29, 48, 11, 49։

**2.** *Թուանշաններով գրեցէք հետեւեալ թիւերը.*

| | | |
|---|---|---|
| *Յիսուն եւ ինը* | *Յիսուն եւ երեք* | *Յիսուն եւ երկու* |
| *Քառասուն եւ չորս* | *Յիսուն եւ եօթն* | *Յիսուն եւ չորս* |
| *Երեսուն եւ ութ* | *Քսան եւ հինգ* | *Յիսուն եւ վեց* |
| *Յիսուն* | *Երեսուն* | *Վաթսուն* |
| *Յիսուն եւ ինը* | *Տասն եւ հինգ* | *Քսան եւ մէկ* |
| *Տասն եւ չորս* | *Քսան* | *Քառասուն* |

## ՊԱՐԶ ՀԱՇԻՒՆԵՐ

**1**. Համրեցէք սա կէտերը. քանի՞ կարգի վրայ շարուած են անոնք. ամէն մէկ կարգի մէջ քանի՞ կէտ կայ։

* * * * * * * * * *<br>
* * * * * * * * * *<br>
* * * * * * * * * *<br>
* * * * * * * * * *<br>
* * * * * * * * * *<br>
* * * * * * * * * *

**2**. Սկսելով 3էն, համրեցէք 5ական, մինչեւ 30։
**3**. Սկսելով 2էն, համրեցէք 3ական, մինչեւ 40։
**4**. Սկսելով 1էն, համրեցէք 4ական, մինչեւ 50։
**5**. Քանի՞ կ՚ընէ

| | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 12 | կեռաս | եւ | 6 | կեռաս. | 13 | կեռաս | եւ | 6 | կեռաս |
| 10 | „ | եւ | 6 | „ | 11 | „ | եւ | 6 | „ |
| 14 | „ | եւ | 6 | „ | 15 | „ | եւ | 6 | „ |
| 16 | „ | եւ | 6 | „ | 18 | „ | եւ | 6 | „ |

**6**. Գիտնալով որ 3 եւ 7 կ՚ընէ 10, քանի՞ կ՚ընէ

53 եւ 7. 23 եւ 7. 43 եւ 7. 33 եւ 7։

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ**. — 6ական համրել.

| | | |
|---|---|---|
| 6 եւ 6 կ՚ընէ 12 | 6 ալ ... 30 | 6 ալ ... 48 |
| եւ 6 ... 18 | 6 ալ ... 36 | 6 ալ ... 54 |
| եւ 6 ... 24 | 6 ալ ... 42 | 6 ալ ... 60 |

## ՎԱԹՍՈՒՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԵՕԹԱՆԱՍՈՒՆ

| | |
|---|---|
| Վաթսուն եւ մէկ, | 61 |
| Վաթսուն երկու, | 62 |
| Վաթսուն երեք, | 63 |
| Վաթսուն եւ չորս, | 64 |
| Վաթսուն եւ հինգ, | 65 |
| Վաթսուն եւ վեց, | 66 |
| Վաթսուն եւ եօթն. | 67 |
| Վաթսուն եւ ութ, | 68 |
| Վաթսուն եւ ինն, | 69 |
| Եօթանասուն, | 70 |

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1.** Կարդացէք հետեւեալ թիւերը.

64, 68, 70, 62, 68, 69, 67, 59, 36, 40, 45
60, 51, 61, 42, 62, 53, 63, 50, 42, 30, 65։

**2.** Թուանշաններով գրեցէ՛ք հետեւեալ թիւերը.

Վաթսուն եւ վեց. Վաթսուն. Վաթսուն եւ վեց.
Երեսուն երկու. Տասն եւ ինը. Վաթսուն եւ ինը.
Վաթսուն եւ մէկ. Քսան եւ ութ. Տասն եւ ինը։

### ՊԱՐԶ ՀԱՇԻՒՆԵՐ

**1.** Համրեցէ՛ք սա կէտերը. քանի՞ կարգի վրայ շարուած են անոնք. ամէն մէկ կարգի մէջ քանի՞ կէտ կայ.

✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱
✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱
✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱
✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱
✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱
✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱
✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱ ✱

**2.** Եթէ 2ը երկու անգամ առնէք, ի՞նչ կ՚ունենաք։

**3.** Ի՞նչ կ՚ունենաք, երբ 2ը երեք անգամ առնէք։

**4.** Ի՞նչ կ՚ունենաք, երբ 2ը հինգ անգամ կրկնէք։

**5.** Ի՞նչ կ՚ունենաք, երբ 2ը կրկնէք չորս անգամ, — վեց անգամ, — ութ անգամ։

**6.** Քանի՞ անգամ 2 կայ 4ին մէջ։

**7.** Քանի՞ անգամ 2 կայ 8ին, 6ին, 14ին, 16ին, 12ին, 18ին մէջ։

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ.** — 7ական համրել.

| | | |
|---|---|---|
| 7 եւ 7 կ՚ընէ 14 | 7 ալ ... 35 | 7 ալ ... 56 |
| եւ 7 ... 21 | 7 ալ ... 42 | 7 ալ ... 63 |
| եւ 7 ... 28 | 7 ալ ... 49 | 7 ալ ... 70 |

## ԵՕԹԱՆԱՍՈՒՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՈՒԹՍՈՒՆ

*Եօթանասունէն յետոյ եկող թիւերն են․*

| | |
|---|---|
| *Եօթանասուն եւ մէկ,* | 71 |
| *Եօթանասուն երկու,* | 72 |
| *Եօթանասուն երեք,* | 73 |
| *Եօթանասուն եւ չորս,* | 74 |
| *Եօթանասուն եւ հինգ,* | 75 |
| *Եօթանասուն եւ վեց,* | 76 |
| *Եօթանասուն եւ եօթը,* | 77 |
| *Եօթանասուն եւ ութ,* | 78 |
| *Եօթանասուն եւ ինն,* | 79 |
| *Ութսուն,* | 80 |

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1**․ *Կարդացէք հետեւեալ թիւերը․*

63, 73, 60, 70, 64, 74, 68, 78, 40, 80, 61։
71, 75, 65, 76, 59, 39, 27, 55, 22, 17, 44։

**2**․ *Թուանշաններով գրեցէ՛ք հետեւեալ թիւերը․*

*Վաթսուն եւ ութ․* *Եօթանասուն եւ ութ․*
*Եօթանասուն երեք․* *Եօթանասուն․*
*Եօթանասուն եւ հինգ․* *Վաթսուն եւ վեց․*
*Եօթանասուն եւ ինը․* *Եօթանասուն չորս․*
*Յիսուն․* *Քառասուն․* *Ութսուն․* *Երեսուն։*

## ՊԱՐԶ ՀԱՇԻՒՆԵՐ

**1.** *Հարեցէ՛ք սա կէտերը.*



*Քանի՞ կարգի վրայ շարուած են ատոնք. ամէն մէկ կարգի մէջ քանի՞ կէտ կայ։*

**2.** *Քանի՞ կ՚ընէ* 3 *ղրուշ եւ* 3 *ղրուշ։*

**3.** *Ի՞նչ թիւ կ՚ունենանք, երբ* 3 *ղրուշը երեք անգամ կրկնենք։*

**4.** *Երբ չորս անգամ* 3 *կանգուն կտաւ առնեմ, քանի՞ կանգուն կտաւ կ՚ունենամ։*

**5.** *Ի՞նչ կ՚ունենամ, երբ* 3*ը կրկնեմ վեց անգամ, — ութ անգամ, — հինգ անգամ։*

**6.** *Քանի՞ անգամ* 3 *կայ* 3*ին,* 6*ին,* 9*ին,* 12*ին,* 15*ին,* 18*ին մէջ։*

**7.** *Մէկ կանգուն կտաւը կ՚արժէ* 3 *ղրուշ. քանի՞ կանգուն կրնանք գնել* 6 *ղրուշով, —* 9 *ղրուշով, —* 12 *ղրուշով։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ. — 8*ական համրել.*

| | | |
|---|---|---|
| 8 *եւ* 8 *կ՚ընէ* 16 | 8 *ալ* . . . 40 | 8 *ալ* . . . 64 |
| *եւ* 8 . . . 24 | 8 *ալ* . . . 48 | 8 *ալ* . . . 72 |
| *եւ* 8 . . . 32 | 8 *ալ* . . . 56 | 8 *ալ* . . . 80 |

## ՈՒԹՍՈՒՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՆՆՍՈՒՆ

*Ութսունէն յետոյ եկող թիւերն են.*

| | |
|---|---|
| *Ութսուն եւ մէկ,* | **81** |
| *Ութսուն երկու,* | **82** |
| *Ութսուն երեք,* | **83** |
| *Ութսուն եւ չորս,* | **84** |
| *Ութսուն եւ հինգ,* | **85** |
| *Ութսուն եւ վեց,* | **86** |
| *Ութսուն եւ եօթն,* | **87** |
| *Ութսուն եւ ութ,* | **88** |
| *Ութսուն եւ ինն,* | **89** |
| *Իննսուն,* | **90** |

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1.** *Կարդացէ՛ք հետեւեալ թիւերը,*

17, 83, 85, 29, 89, 48, 84, 88, 75, 87։

**2.** *Թուանշաններով գրեցէ՛ք հետեւեալ թիւերը։*

| | |
|---|---|
| *Տասն եւ մէկ* | *Վաթսուն երեք* |
| *Երեսուն* | *Ութսուն եւ ութ* |
| *Յիսուն եւ չորս* | *Տասն եւ վեց* |
| *Եօթանասուն եւ եօթն* | *Քառասուն երկու* |
| *Ութսուն եւ հինգ* | *Քսան եւ եօթը* |
| *Եօթանասուն եւ հինգ* | *Երեսուն եւ ինն* |
| *Տասն եւ ինը* | *Վաթսուն եւ ութ* |

## ՊԱՐԶ ՀԱՇԻՒՆԵՐ

1. Համրեցէք սա կէտերը. քանի՞ կարգի վրայ շարուած են անոնք. ամէն մէկ կարգի մէջ քանի՞ կէտ կայ.

* * * * * * * * * *
* * * * * * * * * *
* * * * * * * * * *
* * * * * * * * * *
* * * * * * * * * *
* * * * * * * * * *
* * * * * * * * * *
* * * * * * * * * *
* * * * * * * * * *

2. Կարդացէք հետեւեալ թիւերը.

64, 78, 86, 83, 81, 46, 77, 66, 88, 55, 72։
74, 89, 90, 86, 82, 73, 54, 38, 57, 25, 36։

3. Թուանշաններով գրեցէք.

| | |
|---|---|
| Ութսուն եւ չորս | Ութսուն եւ հինգ |
| Եօթանասուն եւ վեց | Տասն եւ վեց |
| Տասն եւ ութ | Քառասուն եւ ութ |

3. Գտնել հետեւեալ թիւերուն կէսը.

8, 10, 2, 14, 18, 6, 4, 12, 16։

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ. — 9ական համրել. [Աւելցնել 10 եւ հանել 1].

| | | |
|---|---|---|
| 9 եւ 9 կ'ընէ 18 | 9 ալ . . . 45 | 9 ալ . . . 72 |
| եւ 9 . . . 27 | 9 ալ . . . 54 | 9 ալ . . . 81 |
| եւ 9 . ., 36 | 9 ալ . . . 63 | 9 ալ . . . 90 |

## ԻՆՆՍՈՒՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՀԱՐԻՒՐ

| | |
|---|---|
| Իննսուն եւ մէկ, | 91 |
| Իննսուն երկու, | 92 |
| Իննսուն երեք, | 93 |
| Իննսուն եւ չորս, | 94 |
| Իննսուն եւ հինգ | 95 |
| Իննսուն եւ վեց, | 96 |
| Իննսուն եւ եօթն, | 97 |
| Իննսուն եւ ութ, | 98 |
| Իննսուն եւ ինը, | 99 |
| ՀԱՐԻՒՐ, | 100 |

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

1. Կարդացէ՛ք հետեւեալ թիւերը․

37, 73, 99, 45, 91, 19, 97, 90, 85, 58, 65։
92, 88, 98, 59, 83, 70, 93, 80, 96, 62, 42։
15, 95, 57, 75, 48, 84, 35, 53, 74, 17, 71։

2. Թուանշաններով գրեցէ՛ք հետեւեալ թիւերը․

| | |
|---|---|
| Իննսուն եւ եօթը | Քառասուն |
| Եօթանասուն եւ մէկ | Իննսուն |
| Եօթանասուն երկու | Իննսուն եւ հինգ |
| Յիսուն | Իննսուն եւ ութ |
| Վաթսուն | Իննսուն եւ ինը |
| Քսան եւ ինը | Երեսուն |

## ՔԱՂՈՒԱԾՔ. 1ԷՆ ՄԻՆՉԵՒ 100

1, 2, 3, 4, 5, 6, 7, 8, 9, 10,
11, 12, 13, 14, 15, 16, 17, 18, 19, 20,
21, 22, 23, 24, 25, 26, 27, 28, 29, 30,
31, 32, 33, 34, 35, 36, 37, 38, 39, 40,
41, 42, 43, 44, 45, 46, 47, 48, 49, 50,
51, 52, 53, 54, 55, 56, 57, 58, 59, 60,
61, 62, 63, 64, 65, 66, 67, 68, 69, 70,
71, 72, 73, 74, 75, 76, 77, 78, 79, 80,
81, 82, 83, 84, 85, 86, 87, 88, 89, 90,
91, 92, 93, 94, 95, 96, 97, 98, 99, 100։

*Թիւերը տասնական համրելու համար կ՚ըսենք.*

*Տասը. քսան. երեսուն. քառասուն. յիսուն. վաթսուն. եօթանասուն. ութսուն. իննսուն. հարիւր։*

10. 20. 30. 40. 50. 60. 70. 80. 90. 100։

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ

**1.** *Համրել եւ գրել* 1*էն մինչեւ* 100։

**2.** *Համրել եւ գրել հակադարձը, այսինքն* 100*էն մինչեւ* 1։

**3.** *Կրկնեցէ՛ք հետեւեալ թիւերը.*

2. 3. 5. 9. 10. 7. 1. 4. 6. 8։

**4.** Քանի՞ կ'ընէ

| | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 12 | կեռաս | եւ | 3 | կեռաս. | 13 | կեռաս | եւ | 2 | կեռաս. |
| 10 | „ | եւ | 2 | „ | 11 | „ | եւ | 3 | „ |
| 14 | „ | եւ | 3 | „ | 15 | „ | եւ | 3 | „ |

**5.** Քանի՞ պէտք է աւելցնել

| | | | | |
|---|---|---|---|---|
| 4ին | վրայ՝ | 5 | ունենալու | համար. |
| 3ին | „ | 7 | „ | „ |
| 5ին | „ | 9 | „ | „ |
| 5ին | „ | 8 | „ | „ |
| 6ին | „ | 7 | „ | „ |
| 4ին | „ | 8 | „ | „ |
| 2ին | „ | 6 | „ | „ |
| 4ին | „ | 7 | „ | „ |

**6.** Ընկոյզներ, կաղիններ համրեցէ՛ք 10 առ 10, մինչեւ 100։ — Հակադարձը համրեցէ՛ք 100էն մինչեւ 10[1]։

**7.** Գրերով գրել հետեւեալ թիւերը.

5. 10. 30. 50. 20. 60. 40. 90. 80. 70։

**8.** Համրել, 2էն սկսելով, երկու առ երկու մինչեւ հարիւր։

**9.** Համրել, 5էն սկսելով, հինգ առ հինգ մինչեւ 100։

**10.** Համրել, 10էն սկսելով, տասն առ տասը մինչեւ 100։

---

[1] Անհրաժեշտ է որ տղայք գիտնան վարժ կերպով համրել թիւերը հակադարձէն։ Ասիկայ բնական կերպով ճամբայ բանալ է դէպ ի բարձումն։

## ՊԱՐԶ ՀԱՇԻՒՆԵՐ

1․ Հովիւը դաշտերէն կը բերէ իր հօտը․ ունի 5 կով եւ 10 ոչխար․ քանի՞ կենդանի ունի։

2․ Առաւօտէն մինչեւ կէս օր 3 մղոն քալեցի․ կէս օրէն մինչեւ երեկոյ 2 մղոն ալ քալեցի։ Ամէնը քանի՞ մղոն քալեցի։

3․ Յարութիւն գրատախտակին վրայ կաւիճով 6 կէտ կը նշանակէ․ Պօղոս կը նշանակէ 4 կէտ։ Ամէնը քանի՞ կէտ եղաւ։

4․ Երանուհի երկուշաբթի օր 2 թաշկինակ խըծպեց․ ուրբաթ օր 5 թաշկինակ խծպեց։ Երկու օրուան մէջ քանի՞ թաշկինակ խծպեց։

5․ Վարժուհին գրատախտակին վրայ 8 գիծով պատկեր մը շինեց․ ուրիշ մըն ալ շինեց 7 գիծով․ երրորդ մըն ալ շինեց 6 գիծով։ Վարժուհին ամէնը քանի՞ գիծ գծեց։

6․ Անդրանիկ աշխատեցաւ 8 ժամ․ Պետրոս աշխատեցաւ 6 ժամ։ Անդրանիկ քանի՞ ժամ աւելի աշխատեցաւ։

7․ Տղայ մը երկուշաբթի օր շահեցաւ 3 ղրուշ, երեքշաբթի օր շահեցաւ 4 ղրուշ։ Ամէնը քանի՞ ղրուշ շահեցաւ։

8․ Տփիկի մը մէջ 3 շաքար ունէի․ 4 հատ ալ աւելցուցի։ Հիմա քանի՞ շաքար կայ մէջը։

9․ Վարսենիկ տետրակին մէկ երեսին վրայ 3 իծ քաշեց․ երկրորդ երեսին վրայ՝ 7 գիծ, երրոր-

դին վրայ՝ 9 գիծ։ Վարսենիկ ամէնը քանի՞ գիծ քաշեց։

**10.** Խոյրարար մը 6 խոյր եզերեց կապոյտ ժապաւէնով, 4 խոյր՝ դեղին ժապաւէնով, եւ 8 խոյր՝ վարդագոյն ժապաւէնով։ Քանի՞ խոյր եզերեց։

**11.** Գոհարիկին մայրը օր մը տան վերնայարկը կը ղրկէ զինքը։ Սանդուղէն վեր ելնելու ժամանակ, Գոհարիկ կը տեսնէ 3 հատ մուկ որոնք կը փախչէին, ծակ մը կը մտնէին։ Յետոյ անկիւն մը 2 մուկ ալ կը տեսնէ. յետոյ կը տեսնէ 4 հատ որոնք կը վազվըռտէին։ Քանի՞ մուկ տեսաւ Գոհարիկ։

**12.** Պարոն մը առտուն իր երկու տղաքներուն հետ ճամբայ ելաւ՝ գիւղ երթալու համար։ 3 ղրուշ ծախսեց շոգեկառքին համար, 5 ղրուշ ծախսեց ուտելիքի համար. 4 ղրուշով ալ երկու խաղալիք գնեց։ Ո՞րչափ ծախսեց։

**13.** Երկրագործ մը դաշտին մէջ աշխատեցաւ, երկուշաբթի 4 ժամ, երեքշաբթի 5 ժամ, չորեքշաբթի 2 ժամ, հինգշաբթի 3 ժամ, ուրբաթ 1 ժամ, շաբաթ 7 ժամ։ Շաբթուան մէջ քանի՞ ժամ աշխատած է դաշտը մշակելու համար։

**14.** Գիւղացի մը վանդակի մը մէջ ճագարներ կը պահէ. 9 հատ ճերմակ կայ, 8 հատ գորշ եւ 7 հատ թուխ. քանի՞ ճագար ունի։ — Ո՞ր ճագարներն աւելի են։

15. Սիմոն շատ կը սիրէ ընկոյզներով խաղալ, այնպէս որ իր բոլոր գրպաններուն մէջ ալ ընկոյզներ ունի։ Օր մը, մայրիկը անդրավարտիքին գրպաններուն մէջ գտաւ 5 հատ, Թիկնոցին գրպաններուն մէջ՝ 6 հատ, բաճկոնին գրպաններուն մէջ ալ 3 հատ։ Մայրիկը բոլորը քանի՞ ընկոյզ գտաւ։

16. Տղայ մը շաքար գնելով, 4 հատը տուաւ իր մէկ ընկերին, 6 հատը ուրիշի մը, 5 հատն իր եղբօրը, 3 հատ ալ իրեն պահեց։ Քանի՞ շաքար ունէր։

17. Մարտիկ եւ Սաթենիկ կայծքարեր համրելով կ'զբօսնուին։ Մարտիկ Սաթենիկին ըսաւ. աջ ձեռքիս մէջ 8 կայծքար ունիմ, ձախ ձեռքիս մէջ 4 կայծքար. երկու ձեռքերուս մէջ ամէնը քանի՞ կայծքար ունիմ։ Ի՞նչ պատասխան տուաւ Սաթենիկ։
— Մարտիկ ո՞ր ձեռքին մէջ աւելի քիչ կայծքար ունէր։

18. Զապէլ եւ Սիմոն զբօսանքի ժամանակ թըղթէ նաւակներ կը շինեն։ Զապէլ արդէն 5 հատ շինած է, բայց Սիմոն, որ աւելի փոքր է, 2 հատ կրցած է շինել։ Դասարան մտնելու ժամանակ, Զապէլ եւ Սիմոն իրենց շինած նաւակները տուփի մը մէջ կը շարեն։ Տուփին մէջ քանի՞ նաւակ կայ։

19. Պտղավաճառ մը չորս պնակ ելակ ունի ծախու։ Առաջին պնակը կը ծախէ 4 ղրուշի, երկրորդը՝ 7 ղրուշի, երրորդը՝ 3 ղրուշի, եւ վերջինը՝ 8 ղրուշի։ Քանի՞ ղրուշի ծախեց բոլոր ելակները։

**20.** Պարտիզպան մը իր պարտէզին ծառերուն վրայէն թրթուրները կը ժողվէ։ 8 թրթուր խնձորենիի մը վրայ կը գտնէ, 7 հատ՝ տանձենիի մը վրայ, 10 հատ՝ սալորենիի մը վրայ։ Ամէնը քանի՞ թրթուր կը գտնէ։

**21.** Եթէ օր մը 3 ղրուշ տամ աղքատներուն, ուրիշ օր մը 5 ղրուշ տամ, երրորդ անգամ մ՚ալ 12 ղրուշ տամ, ամէնը քանի՞ ղրուշ տուած պիտի ըլլամ։

**22.** Խանութպան մը ծախելու համար սեղանին վրայ դրած էր 8 հատ կապոյտ փողկապ, 3 հատ կարմիր, 7 հատ կանաչ, 5 հատ ալ սեւ եւ սպիտակ խառն գոյներով։ Քանի՞ փողկապ կար սեղանին վրայ։

**23.** Հանեցէք 1ը 5էն. 2ը 4էն. 4ը 6էն. 1ը 2էն. 2ը 3էն։ Ի՞նչ կը մնայ։

**24.** Հանեցէք 2ը 10էն. 7ը 8էն. 5ը 6էն. 4ը 8էն. 5ը 9էն։ Ի՞նչ կը մնայ։

**25.** Ի՞նչ կը մնայ, եթէ 7էն 7, 10էն 10, 50էն 50, 100էն 100 հանենք։

**26.** Սեղանին վրայ 6 նուշ կայ. տղայ մը 2 հատը կ՚ուտէ. քանի՞ հատ կը մնայ սեղանին վրայ։

**27.** Սեղանին վրայ 8 գիրք կար. Շնորհիկ 2 հատն առաւ. քանի՞ գիրք մնաց սեղանին վրայ։

**28.** Վարսենիկին մայրը օր մը 6 պիստակ տըւաւ իրեն, պատուիրելով որ կէսը իր եղբօրը տայ։

Վարսենիկ, որ քիչ մը ոսկրամոլ էր, 6 պիստակներն ամբողջապէս կերաւ. ի՞նչ մնաց եղբօրը համար։

**29.** Օր մը պարտիզին աւազանին եզերքը 9 թռչուններ կեցած՝ հացի կտոր մը կը կտցէին։ Երբ պարտէզ մտայ, թռչունները թռան, բաց ի 2 հատէն որ չէին տեսած զիս. քանի՞ թռչուն կերան այդ հացի կտորը։

**30.** Պարտիզին մէջ 9 հաւ ունէի. 2 հատը կորսուեցաւ. քանի՞ հաւ մնաց։

**31.** Խաչիկ 40 փարա ունէր գրպանին մէջ. գրպանը ծակ ըլլալով, 40 փարան փողոցը կորսնցուց։ Խաչիկին քով քանի՞ փարա մնաց։

**32.** Մաքրիկ 8 մատիտ ունի, եւ Նուարդ 3 մատիտ։ Մաքրիկ քանի՞ մատիտ աւելի ունի։

**33.** Գրպանիս մէջ դրամ ունիմ. Եթէ 2 ղրուշ աւելի ունենայի, պիտի կրնայի գնել փայտէ ձի մը որ 7 ղրուշ կ՚արժէ։ Քանի՞ ղրուշ ունիմ գրպանիս մէջ։

**34.** Արիս իր ձեռքին մէջ 8 կաղին ունի. Գառնիկ 3 հատ ունի։ Արիս քանի՞ կաղին աւելի ունի։

**35.** Որթատունկիս վրայ 12 ողկոյզ կար. աղուէսը 5 հատը կերաւ. քանի՞ ողկոյզ մնաց։

**36.** Հաւնոցին մէջ 8 հաւկիթ կար. 3 հատը վերցուցինք. քանի՞ հատ մնաց։

**37.** 8 երես գրելիք գիր ունէի. 5 երեսը գրեցի. գրելիք քանի՞ երես մնաց։

**20.** Պարտիզպան մը իր պարտիզին ծառերուն վրայէն թրթուրները կը ժողվէ։ 8 թրթուր խնձորենիի մը վրայ կը գտնէ, 7 հատ տանձենիի մը վրայ, 10 հատ սալորենիի մը վրայ։ Ամէնը քանի՞ թրթուր կը գտնէ։

**21.** Եթէ օր մը 3 ղրուշ տամ աղքատներուն, ուրիշ օր մը 5 ղրուշ տամ, երրորդ անգամ մ'ալ 12 ղրուշ տամ, ամէնը քանի՞ ղրուշ տուած պիտի ըլլամ։

**22.** Խանութպան մը ծախելու համար սեղանին վրայ դրած էր 8 հատ կապոյտ փողկապ, 3 հատ կարմիր, 7 հատ կանաչ, 5 հատ ալ սեւ եւ սպիտակ խառն գոյներով։ Քանի՞ փողկապ կար սեղանին վրայ։

**23.** Հանեցէք 1ը 5էն. 2ը 4էն. 4ը 6էն. 1ը 2էն. 2ը 3էն։ Ի՞նչ կը մնայ։

**24.** Հանեցէք 2ը 10էն. 7ը 8էն. 5ը 6էն. 4ը 8էն. 5ը 9էն։ Ի՞նչ կը մնայ։

**25.** Ի՞նչ կը մնայ, եթէ 7էն 7, 10էն 10, 50էն 50, 100էն 100 հանենք։

**26.** Սեղանին վրայ 6 նուշ կայ. տղայ մը 2 հատը կ'ուտէ. քանի՞ հատ կը մնայ սեղանին վրայ։

**27.** Սեղանին վրայ 8 գիրք կար. Շնորհիկ 2 հատն առաւ. քանի՞ գիրք մնաց սեղանին վրայ։

**28.** Վարսենիկին մայրը օր մը 6 պիստակ տըւաւ իրեն, պատուիրելով որ կէսը իր եղբօրը տայ։

Վարսենիկ, որ քիչ մը որկրամոլ էր, 6 պիստակներն ամբողջապէս կերաւ. ի՞նչ մնաց եղբօրը համար։

**29.** Օր մը պարտէզին աւազանին եզերքը 9 թռչուններ կեցած՝ հացի կտոր մը կը կտցէին։ Երբ պարտէզ մտայ, թռչունները թռան, բաց ի 2 հատէն որ չէին տեսած զիս. քանի՞ թռչուն կերան այդ հացի կտորը։

**30.** Պարտէզին մէջ 9 հաւ ունէի. 2 հատը կորսուեցաւ. քանի՞ հաւ մնաց։

**31.** Խաչիկ 40 փարա ունէր գրպանին մէջ. գրպանը ծակ ըլլալով, 40 փարան փողոցը կորսնցուց։ Խաչիկին քով քանի՞ փարա մնաց։

**32.** Մաքրիկ 8 մատիտ ունի, եւ Նուարդ 3 մատիտ։ Մաքրիկ քանի՞ մատիտ աւելի ունի։

**33.** Գրպանիս մէջ դրամ ունիմ. Եթէ 2 ղրուշ աւելի ունենայի, պիտի կրնայի գնել փայտէ ձի մը որ 7 ղրուշ կ՚արժէ։ Քանի՞ ղրուշ ունիմ գրպանիս մէջ։

**34.** Արիս իր ձեռքին մէջ 8 կաղին ունի. Գառնիկ 3 հատ ունի։ Արիս քանի՞ կաղին աւելի ունի։

**35.** Որթատունկիս վրայ 12 ողկոյզ կար. աղուէսը 5 հատը կերաւ. քանի՞ ողկոյզ մնաց։

**36.** Հաւնոցին մէջ 8 հաւկիթ կար. 3 հատը հրցուցինք. քանի՞ հատ մնաց։

**37.** 8 երես գրելիք գիր ունէի. 5 երեսը գրեի. գրելիք քանի՞ երես մնաց։

**38.** Վարժուհին 7 տետրակ տուաւ Մաննիկին, եւ 5 տետրակ Զապելին։ Մաննիկ քանի՞ տետրակ աւելի ունեցաւ։

**39.** 9 երես գրելիք գիր ունէի. հիմա ունիմ միայն 3 երես. քանի՞ երես գրած եմ։

**40.** Արուսեակ 9 տարիէն 14 տարու պիտի ըլլայ. հիմա քանի՞ տարու է։

**41.** 3 աման ունիմ. ամէն մէկուն մէջ 2 օխա գինի կայ. քանի՞ օխա գինի ունիմ։

**42.** 4 օր շարունակ իմ գիրքէս 5ական երես կարդացի. ամէնը քանի՞ երես կարդացի։

**43.** Քանի՞ կ՚ընէ

| | | |
|---|---|---|
| 1 անգամ 3. | 1 անգամ 5. | 3 անգամ 1. |
| 4 անգամ 1. | 5 անգամ 1. | 1 անգամ 4. |
| 1 անգամ 1. | 10 անգամ 1. | 6 անգամ 1։ |

**44.** Մէկ ձմերուկը 10 փարա է. քանի՞ փարա է 4 ձմերուկը։

**45.** Օխա մը խնձորը 3 ղրուշ կ՚արժէ. ի՞նչ կ՚արժէ 2 օխա խնձորը։

**46.** 10 ընկոյզ ունէի. կէսը եղբօրս տուի. եղբայրս քանի՞ ընկոյզ ունեցաւ. քանի՞ ընկոյզ մնաց ինծի։

**47.** Գնեցի 2 գրչակալ եւ վճարեցի 40 փարա. մէկ հատը քանի՞ փարա է։

**48.** 10ին մէջ քանի՞ հատ 5 կայ. քանի՞ հատ 2 կայ։

**49.** Այս տեղ կայ 3 գրասեղան. ամէն մէկուն առջեւ 3 տղայ նստած է. ամէնը քանի՞ տղայ կայ այս տեղ։

**50.** Հանրակառքի մը մէջ 10 մարդ կար. կէսը վար իջաւ. Հանրակառքին մէջ քանի՞ մարդ մնաց։

**51.** Գնեցի 3 ղրուշի հաց, 5 ղրուշի միս եւ 4 ղրուշի գինի։ Ո՞րչափ ծախսեցի։

**52.** Գալուստ 3 սալորենի, 9 խնձորենի եւ 11 տանձենի տնկեց։ Քանի՞ ծառ տնկեց։

**53.** Վարդուհի 21 կարկանդակ պահած էր սակառի մը մէջ. շունը 4 հատը կերաւ. քանի՞ կարկանդակ ունի հիմա։

**54.** 6 օխա շաքարին համար վճարեցինք 24 ղրուշ. ի՞նչ կ'արժէ 1 օխան։

**55.** Յակոբ մէկ անգամ 40 բարի նիշ ստացաւ, ուրիշ անգամ մ'ալ 50 բարի նիշ։ Ամէնը քանի՞ բարի նիշ ստացաւ։

**56.** 1 քառորդ ժամու մէջ 15 վայրկեան կայ եւ 1 ժամու մէջ 4 քառորդ ժամ։ Քանի՞ վայրկեան կայ 1 ժամու մէջ։

**57.** 30 կանգուն երկայնութեամբ կերպասի ծրարէ մը 20 կանգուն ծախեցինք։ Ո՞րչափ մնաց։

**58.** Ապրանք մը 57 ղրուշ արժեց։ Քանի՞ ղրուշի ծախելու է զայն որ 3 ղրուշ շահինք։

**59.** Մէկ շաբթուան մէջ 7 օր կայ։ Երբ անոնց առաջին օրը երկուշաբթի համարենք, միւս երեք-

չարթինները ամսոյն քանի՞ին պիտի հանդիպին։

**60.** Երկու մարդու դրամ տուինք. առաջինին տուինք 20 ղրուշ. երկրորդին 4 ղրուշ աւելի։ Ո՞րչափ առաւ երկրորդը։

**61.** 4 հատ տասը փարանոց պէտք է որ ղրուշ մը ըլլայ. քանի՞ ղրուշ կ՚ընէ 40 հատ տասը փարանոցը։

**62.** 40 փարան 1 ղրուշ կ՚ընէ. քանի՞ փարա կ՚ընէ 5 ղրուշը։

**63.** 100 փարան քանի՞ ղրուշ կ՚ընէ։

**64.** 35 փարային վրայ քանի՞ փարա աւելցնելու է որ 1 ղրուշ ըլլայ։

**65.** Արուսեակ 7 ղրուշ ունի. ի՞նչ տալու է իրեն որ 18 ղրուշ ունենայ։

**66.** Գրավաճառին 23 ղրուշ պարտք ունէի. 14 ղրուշը տուի. տակաւին ո՞րչափ կը պարտիմ։

**67.** 27 ղրուշ ունէի. 8 ղրուշը ծախսեցի. ո՞րչափ մնաց։

**68.** 12 թաշկինակը կ՚արժէ 12 ղրուշ. ո՞րչափ պիտի վճարենք 2 թաշկինակի համար։

**69.** Երկու մարդ 16 ղրուշ առին եւ կ՚ուզեն իրենց մէջ բաժնել. քանի՞ական ղրուշ պիտի առնեն։

**70.** 15 ղրուշով 5 կանգուն կտաւ գնեցինք. ի՞նչ կ՚արժէ մէկ կանգունը։

**71.** 20 ղրուշ տալով 5 հատ Թուաբանութիւն գնեցինք. ի՞նչ կ՚արժէ մէկ հատը։